

# FESTIVAL

VI. Weltfestspiele
der Jugend und der Studenten
für Frieden und Freundschaft
Moskau, 28. Juli-11. August, 1957

ՀԼԿԵՄ
ԿԵՆՏԿՈՄԻ
ՄԱՆԿԱԿԱՆ
ԱՄՍԱԳԻՐ

ՊԻՈՆԵՐ

№ 7 1957 թ.
ՀՈՒԼԻՍ
ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
29-ՐԴ ՏԱՐԻ

# ՖԵՍՏԻՎԱԼԱՅԻՆ ՕՐԵՐ

Պ. ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ

Նկ. Ֆ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

Մեղմորեն իջնում են անձրևի կաթիլները և ցողում շենքերի



վարդատուփ քարերը, փողոցները, ծառերը...

Վարուժանն ու Անահիտը կանգնել են պատշգամբում ու բախիծով նայում են մեկ՝ ամպամած երկնքին, մեկ՝ գետնի վրա գոյացած ջրափոսերին։

—Այս անձրևը չի կտրվի,՝ արի գնանք,—ասում է Վարուժանը և հարցական նայում իրենից երկու տարով փոքր քրոջը։

—Ես էլ թրջվելուց չեմ վախենում, բայց այսպիսի եղանակին



ի՞նչ կարող է լինել։

—Չգիտեմ,—ուսերը վեր քաշելով ասում է եղբայրը,—բոլորը գնում են, մենք էլ գնանք։

Քույր ու եղբայր իջնում են պատշգամբից և դուրս գալիս բակ։ Նրանք հագել են իրենց նոր, սպիտակ շորերը և կապել պիոներական վզկապները։ Կիրովի փողոցով մի փոքր գնալուց հետո, նրանք թեքվում և դուրս են գալիս Աբովյան։ Չնայած անձրևին, փողոցում աշխույժ եռուզեռ էր։ Ալ-կարմիր դրոշակներով, լոզունգներով և գույնզգույն պաստառներով զարդարված շենքերի առջևից ձգվող մայթերով քայլում են ազգային գունագեղ տարազներ հագած երիտասարդ տղաներն ու աղջիկները։ Շատերի



«Սովետական Միության Հերոս Հունան Ավետիսյան» (բրոնզ)
Քանդակը Ս. ԲԱՂԴԱՍԱՐՅԱՆԻ



Սասնա պարերի խումբը ելույթի ժամանակ

Ղազարյանը, Գ. Կոստանյանը: Նրանք երիտասարդ սերնդին պատմում են իրենց անմոռաց հիշողությունները սիրելի Իլյիչի, Հոկտեմբերյան ռևոլյուցիայի, Կոմունիստական փառապանծ պարտիայի մասին: Նրանց անչափ հետաքրքիր ու հուզիչ զրույցներից հետո, սկսվում են ֆեստիվալային գեղարվեստական ինքնագործունեության ելույթները: Դահլիճում տարածվում են ռևոլյուցիոն երգերի խրոխտ հնչյունները: Այդ երգերը կատարում են պալատի պատանի

ձեռքերին ծաղկեփնջեր ու զուռնավոր թաշկինակներ կան: Դրանք Կիրովականի, Արթիկի, Կալինինոյի, Կրասնոսելսկի շրջաններից եկած պատվիրակներն են, որոնք գալիս են քաղաքի հյուսիսային կողմում գտնվող ֆեստիվալային ավանից: Նրանք մի քանի օրով բնակություն են հաստատել այն-





տեղ, զովաշունչ անտառի գրկում խփած վրանների մեջ: Նրանք գնում են Երևանի գրադարանները, կուլտուրայի տները, գործարանային դահլիճներն ու ակումբները, ուր հազարավոր հանդիսականներ անհամբերությամբ սպասում են, որ տեսնեն կոլտն-

տեսային դաշտերից, գործարաններից, ուսումնական հաստատություններից եկած երիտասարդ տղաներին ու աղջիկներին և նրանց պարն ու երգը:

—Արի առաջ գնանք՝ պիոներ պալատ,—առաջարկեց Անահիտը: Եղբայրը չառարկեց:

Ղ. Ղուկասյանի անվան Պիոներների պալատը երբեք այդքան բազմամարդ չի եղել: Այստեղ հանդիպում են ունենում երկու սերնդի ներկայացուցիչները: Անահին բոլշևիկներ՝ Հ. Բեգլուեր, Ն.



«Տարբեր ազգությունների պարերը» քանդակաշարքից
Քանդակ՝ Խ. ԻՍԿԱՆԴԱՐՅԱՆԻ

ակորդեոնիստներն ու մանդոլինիստները: Հետո ելույթ են ունենում Լենինականի Պիոներ տան երգի-պարի անսամբլը, Քանաքեռի Մանկական քաղաքի, Նոր-Բայազետի մանկական երգի ու պարի ինքնագործ խմբերը:

—Վարժո՛, ինչ լավ կլիներ, որ մեր խումբն էլ ելույթ ունենար, չէ՞,—ասաց Անահիտը:

—Է՜, դու էլ բան ասացիր, դպրոցական ֆեստիվալում մեր խումբը հազիվ նախավերջին տե-







ղը բռնեց, ինչպե՞ս պիտի այստեղ ելույթ ունենա:

Այսպես զրուցելով քույր ու եղբայր դուրս են գալիս պիոներների պալատից: Անձրևն արդեն դադարել է, և անձրևաջրով լվացված շենքերը, փողոցներն ու հրապարակները ուրախ ժպտում են անցորդներին: Տոն է Երևանում, իսկական տոն: Ամենուրեք լսվում են երիտասարդական անկաշկանդ ծիծաղն ու երգը: Հայրենի երգերի սքանչելի մեղեդին հեռզհետե տարածվում ու համակում է ամբողջ քաղաքը:

Անա Ս. Մ. Կիրովի անվան մանկական զբոսայգին: Այստեղ ելույթ են ունենում պիոներների ու դպրոցականների ինքնագործ խմբերը և լավագույն մենակատարները: Բեմահարթակի վրա է Երևանի Ս. Սպանդարյանի անվան դպրոցի աշակերտուհի Արեվիկ Բախուդարյանը, որին Անահիտը լավ է ճանաչում: Արևիկն այնքան հաջող է կատարում ադրբեջանական «Ջուջալարըմ» երգը և ուզբեկական «Օյ Ջոն» պարերգը, որ հիացմունք է պատճառում հանդիսականներին և արժանանում բուռն ծափահարությունների: Արևիկի նման հաջող ելույթ են ունենում նաև աշակերտներ Էդգար Հարությունյանը, Բաբկեն Հունանյանը, Գրետա Մկրտչյանը, Ռուդիկ Բաբայանը, Քնարիկ Թովմասյանը և շատ ուրիշներ:

Վարուժանն ու Անահիտը այստեղ երկար չեն մնում: Ինչ-որ բան հիշելով նրանք վազում են Քսանվեց Կոմիսարների անվան Կուլտուրայի և հանգստի զբոսայգին, որը հեռու չէ: Բեմահարթակի վրա միմյանց են հաջորդում Էջմիածնի, Ամասիայի և այլ շրջանների գեղարվեստական ինքնագործ խմբերը: Քույր ու եղբայր, թեև հետաքրքրությամբ նայում են, բայց նրանք անհանգիստ են և ինչ-որ բանի են սպասում:

Երբ ավարտվում են ելույթները և դադարում վերջին ծափերը, Անահիտն այլևս չի կարողանում թաքցնել ներքին հուզմունքը:

—Վարժո՛, բա ինչո՞ւ սասունցիները չպարեցին, բա դու ասում էիր, թե այստեղ պարելու են նրանք:

—Բոլորն էին այդպես ասում: Ի՞նչ անեմ, ես քեզանից շատ էի



*Օդ են բարձրանում բազմաթիվ օդագնդակներ*

ուզում: Դու դեռ երբեք սաղիո-նում տեսել ես նրանց պարը, բա ե՞ս...

—Ոչինչ, Վարուժ, հայրիկը խոստացել է վաղը երկուսիս էլ տանել եզրափակիչ համերգին:





«Հայկական պար» (բրոնզ)
Քանդակ՝ Խ. ԻՍԿԱՆԴԱՐՅԱՆԻ

* * *

Օրը երեկոյանում է, և Վարուժանն ու Անահիտը վերադառնում են տուն: Բայց նրանք ինչքա՜ն կցանկանային լինել նաև մյուս գրուսայգիներում, կուլտուրայի տներում, ինչպես և սպորտային հրապարակներում, դահլիճներում, ֆիզկուլտուրայի կենտրոնական-տանը, հեծանվային արշավարանում, ուր մրցում էին բասկետբոլիստներն ու վոլեյբոլիստները, ֆուտբոլիստներն ու հեծանվորդները, ըմբիշներն ու թեթև ատլետները: Դե ինչպե՞ս կարողանային լինել ամեն տեղ և տեսնել այդ բոլորը: Դրա համար ամենաքիչը մի քանի օր, գուցե և մի ամբողջ շաբաթ պահանջվեր: Նրանք չկարողացան լինել նաև Հայֆիլհարմոնիայի փոքր դահլիճում, ուր երիտասարդական ուրախ կառնավալ էր տեղի ունենում: Մուտքի մոտ փակցված հսկայական դիմակը ակամայից ծիծաղ էր առաջացնում: «Տխրողների համար», գրված էր մեծ-մեծ տառերով, և տխրության վրա փական էր դրված: Անկյունում նստել էր բսպիտակ խալաթով մի երիտասարդ: Դա դիմակահանդեսի բժիշկն էր: Երբ դիմակահանդեսի եկած երիտասարդներից մեկն ու մեկը հիվանդանար, բժիշկը գործի կըդներ իր կախարդական ու բուժիչ «դեղերը»: Իսկ ի՞նչ դեղեր էին դրանք: Դրանք այծի, աղվեսի, շնիկի, կատվի դիմակներ էին, գույնզգույն թղթեր ու զընդակներ: Դահլիճը լեփ-լեցուն էր: Պարում էին բոլորը: Միմյանց էին հաջորդում հայկական, ռուսական, ադրբեջանական, հնդկական և այլ ժողովրդական պարեր: Հայ երիտասարդ տղաների ու աղջիկների հետ երգում, պարում ու ծիծաղում էին ֆեստիվալի առիթով ուրիշ ռեսպուբլիկաներից եկած հյուրերը:

* * *

Ուշ երեկո է: Հզոր լուսարձակնե՛րը պայծառ լույսերով ողողել են Լենինի անվան հրապարակը: Իրենց մայրիկի հետ այստեղ են եկել նաև Անահիտն ու Վարուժանը: Իսկ հայրիկը գործարանի բանվորների հետ գնացել էր Հայֆիլհարմոնիայի մեծ դահլիճը, ուր բարեկամության երեկո էր տեղի ունենում:

Ամբողջ հրապարակով մեկ հըն-

չում է հայկական ժողովրդական «Քոչարի» պարեղանակը, որը կատարում է 150 հոգուց բաղկացած նվագախումբը:

—Այս լի՜նչ է, նվագում են, բայց ոչ ոք չի պարում,—զարմացած ասում է Անահիտը:

Բայց հենց այդ պահին մի երիտասարդ գրպանից հանում է թաշկինակը, թափահարում գլխավերևում և հրավերի նշան անելով սկսում է պարել: Նրան անմիջապես միանում են ուրիշները: Ուս-ուսի տված պարում են մի քանի տասնյակ երիտասարդներ:

Հանկարծ ուժգնորեն թնդում են համազարկերը և գունավոր լույսերի հրացոլքը ազդարարում է փեստիվալի երկրորդ օրվա ավարտը:

* * *

Ֆեստիվալի վերջին օրն է: Երևանի վրա իջնում է ամառնամուտի զով երեկոն: Քաղաքի տարբեր կողմերից դեպի Սպենդիարյանի անվան օպերայի և բալետի պետական ակադեմիական թատրոնի շենքն են շտապում աշխատավորության բազմաթիվ խմբեր: Նրանց մեջ են նաև Վարուժանն ու Անահիտը:

Դահլիճը բացվում է բեմի վարագույրը: Ֆեստիվալի ռեսպուբլիկական կազմկոմիտեի նախագահ, ՀԼԿԵՄ Կենտկոմի քարտուղար ընկ. Ս. Բաղդասարյանը ողջունում է փեստիվալի մասնակիցներին և հրապարակում առաջնություն շահած անհատ կատարողների ու կոլեկտիվների անունները:

Այնուհետև սկսվում է համերգային բաժինը: Ելույթ են ունենում ոսկե մեդալներ և մրցանակներ ստացած ինքնագործ խմբերն ու շնորհալի մենակատարները:

Ահա բեմի խորքից գալիս է ավանդական զուռնայի ու դհոլի ձայնը: Բեմի վրա ոչ ոք չկա, բայց միանգամից պոռթկում է ծափերի որոտը: Բեմ է մտնում Թալինի շրջանի Աշնակ գյուղի սասնա պարերի խումբը: Հենց մուտքով նա գրավում է հանդիսականների ուշադրությունը:

Ո՛չ զգեստավորումը, ո՛չ շարժումները որևէ բանով չեն հիշեցնում նախորդ խմբերին: Սա կատարյալ ինքնատիպ հայկական խումբ է, որը մի առանձին հմայք է տալիս եզրափակիչ համերգին:

Պարում են սասունցիները, և զուռնան նոր թափ է հաղորդում նրանց ռիթմիկ ու փոթորկուն պարին: Իրար են գալիս դեմ հանդիման կանգնած խմբերը, ձեռքերով ու ուսերով բախվում իրար և ետ դառնում՝ նոր ուժով առաջ գալու համար: Սա մի մարտական պար է, որը ցույց է տալիս աշխատավոր մարդու հերոսական ոգին, լեռնցու ազատասիրությունը, համագործակցությունը և երջանկության համար մարտնչելու վճռականությունը...

Թալինցիները վերջացրել են իրենց ելույթը և զուռնայի ու դհոլի ուղեկցությամբ գնում են դեպի բեմի խորքը: Դահլիճը թընդում է ծափերի օվացիայից: Հանդիսականները կրկին անգամ ուզում են տեսնել նրանց ինքնատիպ ու հմայիչ պարերը:

Բոլոր հանդիսականների հետ հիացմունքով տուն են վերադառնում նաև Վարուժանն ու Անահիտը: Ամբողջ ճանապարհին նրանք խոսում են սասունցիների պարերի մասին:

—Հայրիկ, սասնա պարերի խումբը Մոսկվա կգնա, չէ՞,—անհամբերությամբ հարցնում է Անահիտը:

—Իհա՛րկե, բալիկ ջան. նրանք անպայման Մոսկվա կգնան: Համաշխարհային փեստիվալին կըմասնակցեն նաև՝ Հայէլեկտրոգործարանի տղամարդկանց երգեցիկ խումբը, Ռ. Մելիքյանի անվան երաժշտական ուսումնարանի քանոնիստները, հայկական ժողովրդական երգի-պարի վաստակավոր անսամբլի երիտասարդ կատարողները:



Լիբանանի հայ առաջադեմ գրող Արմեն Դարյանը մասնակցել է երիտասարդության Բեռլինյան ֆեստիվալին: Այնտեղ նա շատ հանդիպումներ է ունեցել աշխարհի բոլոր ծայրերից եկած պատանիների ու աղջիկների հետ: Ֆեստիվալի օրերին նա ծանոթացել է նաև գերմանացի պիոներուհի Ինգրիդի հետ, որին էլ ուղղված է այս նամակ-պատմվածքը:

«Իմ փոքրիկ պիոներուհիս» պատմվածքը մենք տպագրում ենք որոշ կրճատումներով և որոշ լեզվական փոփոխություններով, որոնք կատարվել են միայն պատմվածքը երեխաներին ավելի հասկանալի դարձնելու նպատակով:

# ԻՄ ՓՈՔՐԻԿ ՊԻՈՆԵՐՈՒՀԻՍ

## ԱՐՄԵՆ ԴԱՐՅԱՆ

Ծանր առօրյայից վերադառնալիս էր, որ քեզ գտա, իմ հեռավոր, իմ սիրելի պիոներուհիս: Կարող ես երևակայել, թե ինչքա՜ն ուրախացա նամակդ ստանալով:

Հարցնում ես ինձ, թե հիշո՞ւմ եմ օգոստոսյան պայծառ այն իրիկունը, երբ հանդիպեցինք իրար: Բայց հարցրու, կարողացե՞լ եմ մոռանալ քեզ և մեր հանդիպման յուրաքանչյուր մանրամասնությունը... Կանգնած էինք այդպես միասին՝ պատի տակ: Մեր շուրջը խանդավառությամբ լեցուն մի աշխարհ կար: Բռնել էիր ձեռքս և նայում էիր ինձ: Բարձրախոսները աշխարհին էին տանում



ժան Լաֆիտի ձայնը: Ֆրանսերեն չգիտես, և երբ թողնում էի ձեռքդ, զգում էիր, որ ծափահարելու արժանի բաներ են ասվում: Նայվածքդ կհարցներ ինձ, և ես շարժում էի գլուխս հաստատակամ: Դառնում էիր ընկերներիդ՝

— Յա՛,— ասում, և պայթում էին նաև ձեր ծափերը:

Շարունակե՞մ: Հետո, երբ Օտտո Գրոտևոլը խոսեց, քեզ նայելու հերթը իմս էր. դու խարտյաշ գլուխդ քսում էիր արմունկիս և աչքերդ ծիծաղում էին: Երբ գերմանացի պիոների կապույտ վզկապդ տվիր ինձ, հարցրեցի, թե եղբայր ունի՞ս: Այնքա՜ն էի վախենում հարցնել հայրիկիդ ու մայրիկիդ մասին: Մտածում էի, թե գուցե որբ լինես: Հազիվ էի հասկացրել քեզ, թե քույր չունեմ, երբ փոքրիկ ձեռքդ սահեցավ հանկարծ ափիս մեջ, թևերդ կախվեցին վզիցս: Ինչո՞ւ էիր լալիս, ի՞նչ էիր ասում հեկեկալով, չէի հասկանում, և գիտեմ, դու էլ շատ բան չէիր հասկանում իմ ասածներից:

Փորձում էի հարդարել մազերդ, վեր առնել գլուխդ, որ թաղել էիր թևերիս մեջ: Նայեցիր ինձ միայն այն ժամանակ, երբ մի պահ լռություն տիրեց Մարքս-Էնգելս հրապարակի վրա: Ու Էնրիկո Բերլինգուերի ձայնը թրթռաց երիտասարդության ուխտի յուրաքանչյուր բառի վրա: Այդ պահին, քո կրծքին կախեցի այն ոսկեզօծ զինանշանը, որ չինացի մի ուսանող էր տվել ինձ. Նրանից ավելի թանկագին բան չունեի: Այսուհանդերձ, ես չկարողացա որոշել, թե մեր երկուսից ո՞վ է ավելի հպարտ. դո՞ւ՝ նախագահ Մաոյի այդ դիմաքանդակով, թե՞ ես՝ փոքրիկ պիոների քո վզկապով: Երբ սեղմեցինք իրար ձեռք, հիշո՞ւմ ես, Էնրիկոն շատ հավանաբար մեզ էր նայում, այլապես՝ ինչո՞ւ պիտի ճիշտ այդ պահին կրկներ.

— Այս հանդիսավոր պահին, երդվում ենք հավատարիմ մնալ խաղաղության գործին: Երդվում ենք, երդվում ենք, երդվում ենք:

Այն ի՜նչ կերպակի էր, այն ինչքա՜ն աստղեր կային երկնքում: Ու լույսեր՝ բազմերանգ, բազմաձև: Երբ պայթում էին հրթիռները, թարթիչներդ թփրտում էին ու դու ավելի ամուր էիր հպվում կողքիս: Ջրվեժում էին լույսերը, գլուխդ վեր էիր առնում, թոթովում արմունկս, ուզում էիր, որ նայվածքս հետևի ցուցամատիդ ուղղությանը, մինչդեռ ուրախության տոն տվողը՝ քո աչքերն էին, քո ժպիտը, քո մանկական զարմանքը: Ի՞նչ գիտենայիր, թե այդ պահին ինչու էի ես մտածում իմ անիմաստ, իմ դժբախտ մանկության մասին: Ես այնտեղ զգացի ու հասկացա, որ քեզ վաղուց եմ ճանաչում, որ քեզ կորցրել էի մի օր, և Բեռլինի այդ հրապարակում վերջնականապես նորից գտա:

Տոնահանդեսի վերջին օրն էր: Հետևյալ առավոտ դու վերադար-



ձար քո գյուղը, իսկ ես՝ իմ երկիրը: Մեր քարափի վրա հազիվ էի ոտք դրել, երբ խուզարկեցին ինչ-որ ունեի, բռնագրավեցին ինչ-որ բերել էի Բեռլինից: Սակայն վզկապդ թողեցին: Մի զարմանա, իմ փոքրիկ պիոներուհիս, նրանք չգիտեն պիոներական վզկապիդ խորունկ իմաստը: Ինչպե՞ս կուզես, որ ըմբռնեն աշխարհի երիտասարդների բարեկամության նշանակությունը:

Նայում եմ հիմա վզկապիդ, որ կախել եմ սենյակիս մեջ, և աչքերս լցվում են: Նայվածքս ընկնում է նամակիդ մանրիկ տառերի վրա, և մենք շարունակում ենք այն գիշեր կիսատ թողած մեր զրույցը: Դու ասում ես.

— «Իմ շատ սիրելի եղբայր, գյուղ վերադառնալով, պատմեցի բոլորին մեր բարեկամության մասին, ասացի, թե քո երկրում էլ լավ մարդիկ կան: Եվ ուզում եմ, որ պատմես ինձ նրանց մասին, քո երկրի մասին»...

Պստիկ Ինգրիդ, մինչև երեկ, միտքս լի էր քո հիշատակով, հիմա լի է քո ներկայությամբ, այն աստիճան, որ ինձ թվում է, թե միասին կանգնած ենք պատուհանի առջև, նայում ենք մեր քաղաքին: Մտածում եմ, թե ներքևում՝ փողոցում ենք



ահա, և նորից ափիս մեջ զգում եմ ձեռքդ, ամեն քայլափոխի զգում եմ քո զարմանքը: Միասին նայում ենք լրագրավաճառ բոկոտն փոքրիկներին, և ինձ չի հաջողվում այս անգամ որոշել, թե աչքերիդ արտահայտությունը մոտ է ցավի՞, թե զարմանքի: Սպասում եմ հարցումներիդ. չես խոսում, և ես ասում եմ.

— Հոգնեցի՞ր, իմ փոքրիկ պիոներուհիս:

— Ոչ... ու՞ր պիտի գնանք...

— Ուր որ կուզես, հաշիվը մեկ է, բաց աչքերդ այսպես. տես բութդ արևմուտք է նայում, ճկույթդ՝ արևելք, իսկ ցուցամատդ՝ հարավ: Հաշիվը միշտ կմնա նույնը: Մեր քաղաքի թշվառության սահմանները կապված են, որ կողմից էլ որ սկսես: Արևմուտքից արաբական հյուղավաններն են, արևելքից՝ հայկական հյուղավանները, հարավից՝ գաղթականների վրանները: Իսկ հյուսիսում՝ մի ժամանակ այնտեղ էլ փայտե տնակներ կային, մի օր հրդեհ եղավ, ու... մնացածը կհասկանաս:

Սակայն մանկական հետաքրքրությունդ սահման չի ճանաչում:

— Որտե՞ղ ենք հիմա,— հարցնում ես:

— Սա Մաարատ փողոցն է:

— Ի՞նչ...

— Մաարատ, այսինքն՝ ցուցահանդես: Գիտեմ, պիտի ուզես հասկանալ, թե ինչի՞ ցուցահանդես: Այս րոպեիս. դա կախված





է այցելության ժամից: Եթե առավոտ վաղ գաս, այստեղ պարզ ու խոնարհ մարդիկ կտեսնես՝ հիվանդ, անգործ ու կիսամերկ, մի պատառ հացի և մի գավաթ թեյի սպասելիս: Մի քանի ժամ հետո, ամերիկյան ավտոմեքենաների ամբողջ ճոխությունն է հորդում նրա ափալով: Երբ կես գիշերին անցնես այստեղով, կամաց շարժվիր, մայթերի վրա քնած մարդիկ կան, կարթնանան: Այստեղ «գիշերը աղքատի ծածկոցն է», միակ ծածկոցը:

Դեպի արևելք երկարող ճամփի վրա է, որ հուլիսի արևոտ մի օր ընկավ Անուարը: Նա էլ կարող էր ծանոթանալ քեզ հետ Բեռլինում: Այնքա՜ն երիտասարդ էր, և այնքա՜ն երազներ ուներ: Ընկավ՝ դեմքը սալահատակին, հետո՝ նրան վայրագորեն կոխկռտեցին և ոտքով հրեցին մի կողմ: Հետևյալ առավոտ թերթերում նրա լուսանկարը կար: Արյունը լճացել էր կրծքին և բերանի շուրջը, բայց աչքերը բաց էին մնացել: Նույն սև աչքերը... միայն մի քիչ ավելի խորունկ, զարմանալիորեն ավելի պայծառ: Ներքևում այն բառուղին է, որ օտարները կոչել են՝ Թնդանոթների Հրապարակ: Թերևս իրենց տարածած սարսափի հետքերը մինչև իսկ անունների մեջ թողնելու համար:

Մի ուրիշ անգամ ես քեզ մանրամասն կպատմեմ, թե ինչպես այնտեղ սպանվեց Սուլեյմանը՝ իր երկիրը շատ սիրելու համար: Սուլեյմանը չորս զավակ ուներ, չորսն էլ քեզանից փոքր:

Երբ հեռանաս մայր պողոտայից, արևմուտք տանող ճամփան հետզհետե կդառնա ծուռ, բութ ու հաշմ՝ Թելխայաթի խրճիթների պես: Հասանը այդքան ճամփա կտրելու ժամանակ չունի ամեն օր, և շաբաթը հազիվ չորս անգամ է գնում մորը տեսնելու: Քեզ համար զարմանալի է, որ Մաարատ փողոցում գտնվող փռում աշխատելով, Հասանը չի կարողանում մորը ամեն օր տեսնել: Եթե նրա մայրը հիվանդոտ չլիներ, եթե Հասանը չմեղքանար նրան, մայրը ինքը պիտի իջներ ամեն օր տղային տեսնելու: «Անկարելիությունը երկու կողմից է»,—ասում է Հասանը: Ո՛չ, դու նրան չես ճանաչում: Իր անվան նման լավ պատանի է, քեզնից հազիվ մի քանի տարի մեծ, թերևս տասներեք, թերևս տասնչորս տարեկան: Ես էլ չէի ճանաչում Հասանին. մի քանի օր առաջ հանդիպեցի նրան բանվորական մի ճաշարանում: Նստել էինք դեմ դիմաց: Միսեռապուրը թողեց կիսատ ու գլուխը իջեցրեց թևերի վրա:

— Հիվա՞նդ ես,—հարցրեցի:

— Ո՛չ, քունս շատ է տանում,—ասաց նա:

— Անոթի չե՞ս, առաջ ճաշիր...

Ծնոտը դաստակի վրա, կարմրած աչքերը բացուխուփ անելով, նայեց ինձ.

— Եղբայրս, ժամանակ չունեմ. տուն գնալ, մորս տեսնել եմ ուզում, երկու օր է աչք չեմ փակել, եթե գնամ և գամ, ժամանակ չի մնա քնելու: Մի տարի է անքուն եմ, ի՞նչ անեմ. այստեղ եմ գալիս մի քիչ հանգստանալու... կես գիշերից մինչև հաջորդ իրիկվա վեցը, ոտքի վրա. խմորի տաշտի առաջ եմ:

Հասանը իրենից փոքր չորս քույր ունի. հայրը մի օր ընկել է հինգերորդ հարկից, և մայրը չի ուզում, որ իր տղան էլ որմնադիր լինի նրա պես: Նրան այս փուռի մեջ աշխատության է ուղարկել հարյուր հիսուն դրուշ օրավարձով:

* * *

Նամակդ մի անգամ էլ եմ կարդում: Սա ոչ երկրորդ, ոչ երրորդ ընթերցումն է, բայց իմ հետաքրքրության, քո կարոտի



*և մեր հուշերի պատճառով հայացքս ուրախությամբ է ոստոստում քո բառերի վրայով։*

«Մեր բարեկամությունը՝ պիոներների մեր խմբի համար մի առաջադիմություն է ի նպաստ խաղաղության. արդեն գիտենք, որ առանձին չենք, հեռավոր երկրների մեջ անգամ անհաշիվ բարեկամներ ունենք: Թեև փոքր ենք, բայց հաստատ հավատով ենք աշխատում խաղաղության համար: Դպրոցում էլ որոշել եմ լավ աշակերտուհի լինել, որպեսզի դու էլ հպարտ լինես քույրիկիդ գնահատականներով: Սրտագին բարևներ բոլոր մեր պիոներներից ձեր պիոներներին»:

*Քանի կարդում, այնքան նորություն եմ գտնում բառերիդ մեջ։ Մի բան, որ չեմ հասկանում հիմա, քո ետգրության հարցն է։*

«Գիտե՞ս, շատ փոքր եմ, ամեն ինչ արեցի, որ լավ գրեմ, ասա ինձ, ինչպե՞ս ես գտնում նամակըս»:

*Ինչպե՞ս եմ գտնում նամակըդ... Կարո՞ղ ես ասել ինձ, թե դու ինչպես կարողացար մեկ էջի մեջ այդքան բան ասել։ Պատկերացնում եմ քեզ գրասեղանիդ առջև, խարտյաշ գլուխդ կախած՝ տետրակիդ այս էջի վրա...։ Իսկ ես, տեսնու՞մ ես, քանի ժամ է փորձում եմ պատասխանել քո այդքան պարզ, բայց այդքան խորունկ նամակին, ու չեմ կարողանում։ Գիտեմ, չեմ կարողանում նույնիսկ քեզ պես պարզ արտահայտվել։ Առաջին անգամ է, որ գրում եմ քո տարիքով մի փոքրիկի։ Գուցե չկարողանաս հասկանալ նամակս հիմա՝ ամբողջությամբ։ Վստահ եմ, մի օր կըմբռնես այն։ Նայիր, դու ուզում էիր, որ մեր լավ մարդկանց մասին գրեմ։ Այդ էլ անգամ չկարողացա անել, իմ փոքրիկ Ինգրիդս։ Այնքան շատ են նրանք, և այնքան մեծ, որ մեկ նամակի մեջ կարելի չէ հիշատակել նրանց։ Իսկ եթե խոսեմ նրանց առօրյա հերոսությունների, անսահման զոհաբերությունների մասին, շատ երկար կլինի։ Ո՞ր մեկը ասեմ, ո՞րտեղից սկսեմ... Երևակայիր, քանի՜-քանի անգամ եմ մտածել, թե ո՞վ պիտի կարողանա ասել, թե Օսմանը ինչքան է սիրում ընկերներին։ Եթե տասը բառ ասի, հինգ անգամ անպայման «ընկեր» պիտի կրկնի։ Երկու զավակ ունի նա, և տղայի անունը Ընկեր է դրել։ Որովհետև մտածել է, թե երբեմն իր գիշերները կլցվեն գալիք լավ օրերի երազներով, հարցեր կարթնանան իր ուղեղի մեջ և ընկերոջ ներկայությունը անհրաժեշտ կդառնա իրեն համար։ Ու մեկին «Ընկեր» կոչելու ցանկությունը արյունոտում է նրա սիրտը։ Օսմանը, ամեն գիշեր, տղայի ձեռքը բռնած է քնում. մի քանի անգամ արթնանում է՝ միայն տղայի անունը կանչելու համար։*

*— Ռաֆի՛կ, տղաս, Ռաֆի՛կ։*

*Հիմա, երբ վերջացնեմ նամակըս, առաջին անգամ Ռաֆիկին պիտի տանեմ պիոներական ձեր բարևները։ Շատ փոքրիկ է նա, գիտեմ, բայց մի օր պիոներ պիտի լինի ճիշտ քեզ պես. դա իր հայրիկի անխախտ հավատն է։ Ռաֆիկը բարեկամական ձեր ողջույնների կարիքը շատ ունի։ Նա այսօր իր ձեռքը չի կարող զգալ հայրիկի կոշտացած ափի մեջ։ Ու Օսմանն այս գիշեր չի կարողանա քնել բանտում։ Անշուշտ պիտի մտածի Ռաֆիկի ու բոլորի մասին, սակայն պիտի չկարողանա քնել ավելի շատ նրա համար, որ այսօր Հոկտեմբերյան Հեղափոխության տարեդարձի առթիվ կազմակերպված ցույցի ժամանակ, իրեն պես ձերբակալված ընկերների հետ պիտի կարողանա խոսել մինչև լույս։*

*Դրսում, նոյեմբերյան հովը ամպերի մի մասը ցրել է։ Այս առավոտ այն ի՜նչ փոթորկախառն, տեղատարափ անձրև էր։ Այնինչ դեռ հիմա ցիրուցան աստղեր կան արդեն։ Վաղը՝ կարմիր արև պիտի գա նույն ճամփով։ Ու երկինքը պիտի կապո՜ւյտ, կապո՜ւյտ, կապո՜ւյտ լինի, գերմանացի պիոների քո վզկապի պես, իմ սիրելի, հեռավոր, փոքրիկ պիոներուհիս։*



# ԱՆՎԱՆԻ ՔԱՆՈՆԻՍՏԸ

Ջ. ՎԱՐԴԱՊԵՏՅԱՆ

Ծաղկեփնջերի մի հեղեղ է թռչում դեպի բեմահարթակ։ Անկարելի է զսպել ունկնդիրների ոգևորությունը։



Խ. ԱՎԵՏԻՍՅԱՆ

Լուսանկարը՝ Ս. ԽՈՍՐՈԵՎԻ

—«Բի՜ս», «բրա՜վո», վի՜վա Ավետիսյան, վի՜վա Արմենիա,— գղրդում են Բեռլինի դահլիճի պատերը։

Այստեղ 1951 թվականին աշխարհի բոլոր ծայրերից հավաքվել էին երիտասարդության ներկայացուցիչները։

Բեմահարթակի վրա, փոքր ինչ շփոթված կանգնած էր մի հայ երիտասարդ։ Նրա լայն ճակատին դեռ փայլում են քրտինքի կաթիլները, իսկ երազուն աչքերը ուղղված են դեպի անհունը...

Դահլիճը պահանջում է կրկնել «Հայկական ֆանտազիան»։ Խաչիկ Ավետիսյանը վերսկսում է նվագը։

Նվագում է շնորհալի երաժիշտը, և նրա քանոնի ոսկեղեն լարերը երգում են իր հայրենի Հայաստանի հեքիաթային աղբյուրների կարկաչը, ծաղկով շնչող գարունը, բուրումնալից ծիրանի արտերը, ուր հովի թևին մեղմիկ շնկշնկում են հասուն հասկերը, երգում են թավ ու խորհրդավոր անտառները, լեռները, որոնց բարձր գագաթներին միայն արծիվն է հասնում, երգում է խաղաղ ու կապուտաչյա Սևանա լիճը...

Ով լսել է անվանի երաժշտի քանոնի քաղցր մեղեդիները, հիացել է նրանց քնքշությամբ ու սրտառուչ ելևէջներով։

Խաչիկ Ավետիսյանը իր ստեղծագործությունների կատարմամբ, մի նոր ձևով ցույց տվեց այդ հայկական հնամենի գործիքի արտահայտչական լայն հնարավորությունները։

Անվանի քանոնիստը Բեռլինի միջազգային ֆեստիվալում նվաճեց առաջին մրցանակներից մեկը։

... Խաչիկ Ավետիսյանը մանուկ հասակից սիրեց երաժշտությունը։ Նա նվագում էր թառ, քյամանչա, մանդոլինա, ջութակ, դաշնամուր։ Նա երաժշտական ինքնագործ խումբ էր ղեկավարում, իսկ 14 տարեկան հասակում ֆիլհարմոնիայի ժողովրդական անսամբլի թառահար էր։

Մի անգամ Ավետիսյանը ֆիլհարմոնիայի դիրեկտորի առանձնասենյակում տեսնում է մի գործիք, որը գրավում է նրա ուշադրությունը։ Թույլտվություն խնդրելով, նա մոտենում է գործիքին։ Առաջին իսկ հնչյուններից գործիքը գերում է նրան և դառնում նրա անբաժան ընկերը։

Այդ օրվանից պատանի Խաչիկը սիրում է քանոնը, սովորում է նվագել։

Ամենուր, երբ հանդես է գալիս Խաչիկ Ավետիսյանը իր քանոնով, հիացմունք է պատճառում բոլորին։ Ահա դահլիճով մեկ հնչում է Գրիգի «Անիտրայի պարը»։ Եվրոպական գործիքների համար գրված այդ մեղեդին մի նոր հմայք է ստանում հայկական հինավուրց գործիքի լարերի վրա և տաղանդավոր քանոնիստի մատների տակ։

Այժմ Ավետիսյանն իր վարպետությունը հաղորդում է երիտասարդ քանոնիստներին։ Նրա ղեկավարած քանոնիստների անսամբլը Հայաստանի երիտասարդության առաջին ֆեստիվալում հատուկ մրցանակ ստացավ։







ՌԱՍՈՒԼ ՌԶԱ

Նկ. Մ. ՍՈՍՈՅԱՆԻ

Ձյուն է իջնում նամփաներին:
Սպիտակ են դաշտերը դեռ,
Ամպերի մութ գնդանի մեջ
Շղթայված է արևը դեռ:
Դեռ օդի մեջ շունչն է ձմռան,
Կեչիները մրսում են դեռ,
Դեռ կատաղած գայլի նման
Բուքն է ոռնում երկինքն ի վեր:
Ձմեռ է դեռ: Ի՞նչ իմանաս
Ձմռան խաղը չարաբաստիկ:
Եվ գուցե թե վաղը դարձյալ
Սառնամանիք լինի սաստիկ...
Պատերազմ է դեռ կատաղի,
Ճակատամարտ ահեղավոր,
Դեռ հոսում է արցունքն աղի,
Հորդ արցունքը զինվորի մոր:
Պատերազմ է՝ ո՞վ իմանա,
Թե երբ պիտի նա վերջանա:
Դեռ երկինքը մութ է, և դեռ
Մտրակում է ցուրտն անցորդին,
Չի արթնացել Նևան և դեռ
Չի արձակել սառցե գոտին:
Դեռ չեն լողում հոսանքն ի վար
Արջուկների նման ներմակ
Սառցակոշտերը անհամար:
Դեռ ձմեռն է քազավորում,
Ձյուն է գալիս ու չի հալվում,
Բայց օդի մեջ շունչն է գարնան:

Թե ուշադիր աչքով դիտես,
Գարունն անշուշտ կնկատես,
Թեկուզ ձյուն է, և եռագույն
Դրոշների լաթերը դեռ
Փորձ են անում թռչել կրկին
Տանիքների քիվերն ի վեր,
Թեկուզ դեռ զենք ու զրահով
Սպաներն են շրջում դրսում
Եվ ծռմռում դեմքերն իրենց,
Երբ որ «ընկեր» բառն են լսում,
Թեկուզ իրենց տեղումն են դեռ
Ֆաբրիկանտներ ու պարոններ,
Բայց գարունն է արդեն շնչում,
Գարնան շունչն է ամեն ինչում:



Արդեն երգն է հնչում մարդկանց
Թնդացնելով քաղաքն ամբողջ,
Ռևոլյուցիան իր բոց շնչով
Բարձրացնում է ու ծածանում
Դրոշակներն ազատակոչ:
Վերջն է ձմռան: Երգը մարդկանց,
Եվ վճռական կամքը նրանց,
Եվ դրոշները հուրհրան
Հրաժեշտ են տալիս ձմռան...
Թեկուզ ծնոտ են դեռ ծեծում
Եվ կեղծիքներ են տարածում
Էսեռ, կադետ ու մենշևիկ,
Բայց կոչերը բանվորական,
Ուղեկալները մարտական,
Եվ զազգահները անջատված,
Եվ կալվածքները հրդեհված,
Եվ ժողովները բազմամարդ,
Եվ բարձրագոչ որոտի մեջ
Ճշմարտության ձայնը զվարթ, —
Ավետում են հավատով լի
Գարնան գալուստը բաղձալի:

Թեկուզ բուքն է դեռ մոլեգնում,
Թեկուզ ջղնում են գայրույթից
Մենշևիկյան գայլերը հին,
Թեկուզ ծախու թերթերն անվերջ
Անվանարկում են Լենինին,
Բայց հնչում է ու որոտում
Բոլշևիկյան կոչն իմաստուն.
«Խաղաղություն՝ խրճիթներին
Եվ պատերազմ՝ պալատներին»:

Բոլշևիկյան այդ կոչն արդար
Ձմռան վերջն է ազդարարում
Եվ երկրով մեկ զիլ շեփորում
Երջանիկ լույսն ազատության:

* * *

Կայարաններ, կայարաններ,
Արձակ դաշտեր, մութ անտառ...
Շոգեքարշը քարշ է տալիս
Վագոնները մարդատար:

Խարխուլ ու նեղ վագոններում
Հեռու, հեռու կողմերից
Ետ են դառնում զինվորները
Փրկված դաժան հողմերից:
Ետ են դառնում պատերազմից,
Եզերքներից հեռավոր,
Հուշերով ծանր ու դառնագին,
Երազներով թևավոր:
Մեկն երգում է, մեկը՝ ծխում,
Մեկը ննջում է նստած,
Մեկն էլ ինչ-որ հուշ է պատմում
Մանկությունից իր անցած:



Մեկը ինչ-որ բան է ասում՝
Դնելով ձեռքը բեղին...
Թրթռում է վագոնի մեջ
Մոմի բոցիկը դեղին:

Զրուցում են զինվորները,
Տխրում են ու կատակում,

Շոգեքարշի սուլոցներն են
Զրույցն հաճախ ընդհատում:
Ժպիտներն են շողում մեկ-մեկ



Զինվորների այտերին:
Լույսն է դողում, և դողում են
Ստվերները պատերին:
Մախորկայի ծխի ներքո,
Հին, հնամաշ վագոնում
Երեք զինվոր նստարանին
Նստել զրույց են անում:
Զինվորներից մի քիչ հեռու,
Լուսամուտի մոտ կանգնած,
Լենինը դեպ դուրս է նայում
Եվ լուռ լսում է նրանց:
Մեծ Լենինը նոր խոհերով
Ու հոգսերով նորանոր
Հայրենիք է վերադառնում
Աշխարհներից հեռավոր:
Զինվորներից մեկն ասում է.
— Մենք վարում ենք,

Մենք ցանում ենք,
Մենք հնձում ենք,
Մենք էլ արցունք ենք թափում:
Բայց ի՞նչ ունենք,
Ի՞նչի տեր ենք,
Ո՞նց ենք ապրում աշխարհքում:
Ջուր ենք խմում,
Հաց ենք ուտում,
Հողատիրոջ ձեռքին նայում:
Հարստի դեմ մեջք ենք ծռում.
Ինչի՞ տեր ենք
Եվ ի՞նչ ունենք:
Ահա թե ինչ.
Մի հին շինել պատառոտված,
Մի հրացան իր սվինով,
Կարսային մի մրոտված:

Մյուսն ասում է.
— Բավական է
Կռվենք բուրժուի համար,
Պատերազմի ճակատներում
Թափենք արյունը մեր վառ:
Քանի՜ քանիսն անհայտ կորան,
Քանի՜սն ընկան քաջարար,
Ինչքա՜ն հողեր հոշոտեցին
Սև ռումբերն ու արկերը,
Թե մարդ նայի այդ հողերին,
Արյուն կլան աչքերը։
Իսկ Կերենսկին դժգոհ է դեռ...
Անէծք կռվին հազար անգամ,
Սիրտս շատ է վշտացել, —
Ես, սիրելի իմ բարեկամ,
Կռվից շատ եմ կշտացել:

Երրորդն ասում է.

— Ինձ զարնանը
Մանր տվեք զութանի,
Հողի բուրմունքն ամեն տեսակ
Վիշտ ու թախիծ կտանի:
Քրտինք թափեմ, իմ քրտինքից
Թող որ հողը կանաչի.
Մեր հողն ինչքա՜ն լավն է եղել,
Բայց ափսո՜ս, որ մերը չի...
Եվ լռում են զինվորները,
Լռություն է վագոնում,
Մեկը քնել, մյուսները
Նստել ու ձայն չեն հանում:
Այդ ժամանակ մի հին զինվոր
Սկսում է երգ մի ծանոր,
Եվ հնչում է այդ երգի մեջ
Անծայրածիր մի կարոտ:
Երգը հավքի պես թռչում է,
Ու շոյում է հովի պես,
Որոտում է, շառաչում է,
Հառաչում է ծովի պես,
Ոլորվում է, գալարվում է
Ու հոսում է որպես գետ,
Հեռանում է, ծավալվում է



Ու խոսում է սրտի հետ:
Թրթռում է, թևածում է,
Նվագում է նա կրկին.
Եվ ողջ խումբը ձայնակցում է,
Ձայնակցում է այդ երգին:

«Կանաչ դաշտեր, ծաղկած դաշտեր, դաշտեր անսահման,
Հայրենի հող, հարազատ հող, դու մայր աննման:
Ես կռիվ եմ գնում, ո՛վ հող, դու բարով մնա,
Սափրում են, չտիպեին, ես չէի գնա:
Ուժը իմն է, հայրենի հող, բայց կամքն իմը չէ,
Ձեռքերն իմն են, ջանքը իմն է, արորն իմը չէ,

Է՜հ, արորն էլ իմը լինի, հողը իմը չէ:
Հարազատ մայր չես ինձ համար, խորթ ես կարծես թե,
Թե հարազատ լինեիր դու, ինձ կպահեիր,
Կսեղմեիր դու քո կրծքին, կփայփայեիր...
Մնաս բարով, մայր Ռուսաստան, հող իմ հարազատ,
Արդյոք շուտո՞վ կտեսնվենք, դաշտեր ծաղկազարդ»:

Եվ Լենինը լուռ նայելով
Խիստ դեմքերին զինվորական,
Երգն է լսում... Իսկ երգի մեջ



Հողի վիշտն է հայրենական:
Ծանոթ է այդ վիշտը նրան,
Այդ վիշտը խոր ու անսահման
Ամփոփված է շատ երգերում՝
Վոլգայի մոտ ու Սիբիրում:

Լռում է երգն: Ու նա հանդարտ
Մոտենում է զինվորներին,
Հարց ու փորձ է անում նրանց

Ծանոթի պես մի մտերիմ:
Հարց ու փորձ է անում նրանց,
Թե ինչպե՞ս են ապրել հեռվում,
Թե ինչպե՞ս են նրանց զինվոր
Եղբայրները մեռել կռվում,
Թե ինչպե՞ս են սպաները
Զինվորի հետ վերաբերվում,
Ի՞նչ են խոսում Սովետների,
Կերենսկու մասին այնտեղ՝

Պատերազմի ճակատներում:
Եվ մի զինվոր այդ ժամանակ
Ձեռքը տանում ու գրպանից
Բանալին է հանում իր տան.
— Մոտիկ արեք, քաղաքացի,
Չորս տարի է ման եմ ածում
Այս բանալին իմ գրպանում,
Դո՛ւք ասացեք, քաղաքացի,
Ո՞ւմ մեղքով է, որ չորս տարի
Իմ տան դուռը փակ է մնում:

Պտտվում են անիվները,
Թխկթխկում են ու սուրում,
Եվ անկյունում նեղ վագոնի՝
Մոմի բոցն է թրթռում:
Արթնանում են զինվորները
Շրջապատում Իլյիչին,
Իրենց վշտերն ու հոգսերը
Հերթով պատմում Իլյիչին:
Նրանք անծանոթ մարդու հետ,
Ինչպես իրենց ընկերոջ հետ,
Զրուցում են սրտագին:
Գիշերն անցել, լույսն է բացվում,
Լուսամուտից ներս է ընկնում
Արևի շողն առաջին:
Անծանոթը ազատության,
Հողի մասին է խոսում,

Զինվորները հիացմունքով
Նրա խոսքերն են լսում.
— Հարկավոր չէ ո՛չ բանվորին,
Ո՛չ գյուղացուն, ո՛չ զինվորին
Այս պատերազմն ահավոր,
Կորչեն բուրժույ, կալվածատեր,
Մեր մեծ երկրին ազատ թևեր,



Ազատ կյանք է հարկավոր:
Գերված կյանքը դառն է մահից,
Ենթարկվեցիր. կկորչես:
Էսեռներին չհավատաք,
Ոտից-գլուխ կեղծ են նրանք,
Սուտ խոստում են տալիս ձեզ:

Դուք զգել եք ցարին գահից,
Պետք է հիմա ճանապարհից
Քշել կալվածատերին,
Պետք է նրան քշեք հողից,
Զրկեք նրան լույսի շողից,
Հող չթողնեք իր ձեռքին:
Ժողովուրդը պիտի դառնա
Տուտով տերը ողջ հողի,
Բնությունը պետք է նրան
Բարիքներով ողողի:
Արդ բանվորի ու գյուղացու
Իշխանություն պիտի լինի
Ռուսաստանում մեր անծիր,
Եվ նրանից բարձր ու շքեղ,
Հարուստ, հզոր և հաղթական
Չի լինի այլ մի երկիր:

* * *

Զինվորների խիստ ու հոգնած
Երեսներին թրթռում է
Լուսաբացի շողն ազատ:
Մոտ է սահմանն Ռուսաստանի
Մոտ են վայրերն հարազատ,—
Հետ են մնում անտառները
Եվ դաշտերը վեհանիստ,
Եվ վագոններն է ներխուժում
Բացվող գարունն անհանգիստ:

Օտար ափերը մնում են ետև...
Սահմանն անցել է գնացքը արդեն:
Շոգեքարշն էլի հևում է, փնչում:
Իլյիչը նայում բաց լուսամուտից,
Սոսափն է լսում հայրենի կեչու,
Հայրենի հողի բուրմունքն է շնչում:

Բելոօստրովում խմբվել են մարդիկ,
Դիմավորում են մեծ առաջնորդին:
Ընկեր, բարեկամ խոր կարոտանքով
Սեղմում են ձեռքը, գրկում են նրան...
Հնչում է «ուռան» կառամատույցում
Եվ շառաչում է Վոլգայի նման:

* * *

Պետրոգրադ: Իրիկուն է:
Մոտենում է գնացքն ահա
Ֆինլանդական կայարանին:
Մարդկային հոծ մի բազմություն
Դիմավորում է Լենինին:
Մարդկային ծովն է փոթորկվում
Փողոցներում, հրապարակում...
Լուսարձակի շողն է կապույտ
Թրի նման փայլատակում:
Գնացքն ահա կանգ է առնում,
Եվ դռների մեջ վագոնի
Երևում է այնքան մոտիկ,
Ծանոթ կեցվածքը Լենինի:
Քարանում է մի պահ կարծես
Ժողովուրդը լռության մեջ,
Հետո աղմուկը որոտում,

Տարածվում է քաղաքով մեկ.
— Կեցցե՛, կեցցե՛, բարեկամներ,
Հավետ կեցցե՛ Լենինը մեր:
Եվ բանվորները Լենինին
Ուրախ-ուրախ բարձրացնում
Ու ձեռքերի վրա նրան
Տանում դահլիճն են հասցնում:
Խոսք է խնդրում մի մենշևիկ.
— Թույլ տվեք ինձ, քաղաքացիք:—
Բայց չի լսում ոչ ոք նրան
Ծովի մեջ այդ հոծ բազմության:
Մարդկանց միջով, Լենինն արագ
Դուրս է գալիս հրապարակ,
Բարձրանում ու կանգնում է նա
Զրահապատ մեքենային...
Դեպի կայարան են հոսում
Հուզված գետերը մարդկային.
— Կեցցե՛, կեցցե՛, բարեկամներ,

* * *

Հավետ կեցցե Լենինը մեր:

* * *

Խոր լռություն է հրապարակում,
Միայն սրտերն են հուզմունքով
զարկում:
Ողջ հրապարակն առած հայացքում,
Աչքերը հառած ծովին բազմության,
Լենինն ասում է.
— Ընկերնե՛ր,
Կեցցե՛
Սոցիալիստական ռևոլյուցիան:

Թարգմ. Հ. ՍԱՀՅԱՆ





# Էլի ձիավորը դու ես...

ԱՐՏ. ՔԱԼԱՆԹԱՐՅԱՆ

ՆԿ. ԱԼ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

(Հին զրույց)

Աղքատ մարդ էր գյուղացի Հայրապետը։ Նրա ունեցած — չունեցածը մի փոքրիկ հողակտոր էր, գյուղից հեռու՝ ամայի, քարքարոտ մի դաշտում։ Ամեն առավոտ լուսաստղի հետ արթնանում էր նա, ծաղկավոր չթե թաշկինակի մեջ կապած հացն ու ջրի կուլան դնում խուրջինի մեջ, գցում ուսն ու գնում հանդ։ Աշխատում էր օրն ի բուն գյուղացի Հայրապետը, իսկ երբ երկարում էին ստվերներն ու արևը Ծաղկասարի ետևն էր անցնում, հոգնած ու վաստակած դառնում էր տուն, որտեղ նրան էին սպասում կինը, երեխաները ու իրիկնահացի համեստ սեղանը։

Դոհ էր կյանքից գյուղացի Հայրապետը։ Նա միայն մի մուրազ ուներ՝ երազում էր ձի առնել, որ հանդի ճանապարհին ժամանակ չկորցներ ու աշխատանքի ընկեր ունենար։ Եվ շատ աշխատեց գյուղացի Հայրապետը, քրտինքով թրջեց իր հողի ամեն մի թիզը ու, վերջապես, հասավ իր նպատակին՝ մի ուժեղ ու գեղեցիկ ձի առավ։ Ուրախությամբ լցվեց գյուղացի Հայրապետի հարկը։ Բայց դե ո՞վ էր աղքատին ուրախություն տվել։ Մի գիշեր, ամպամած ու մռայլ մի գիշեր, երբ Հայրապետը ձիով դաշտից տուն էր վերադառնում, ճանապարհի եզրի մացառներն անսովոր խշխշացին։ Ձին ծառս եղավ, բարձրացրեց գլուխը ու տագնապով սկսեց փնչալ։ «Գայլ կլինի» — մտածեց Հայրապետը, բայց հաջորդ վայրկյանին տեսավ դեպի իրեն ուղղված հրացանի երկար փողը, ու մեկը անհեղաաաաա գոչեց.

— Կանգնի՛ր... կյանքդ կամ ձիդ։

Ցավից սեղմվեց գյուղացի Հայրապետի սիրտը, բայց ի՞նչ կարող էր անել՝ կյանքը թանկ էր։ Իջավ Հայրապետը ձիուց, համբուրեց ասես ամեն ինչ հասկացած նրա արցունքոտ աչքերը ու առանց ետ նայելու գնաց տխուր ու տրտում։ Գնաց տուն։

— Մի տխրիր, մա՛րդ, — հույս տվեց կինը, — ողջ լինես դու, էլի կաշխատես, ես էլ կաշխատեմ քեզ հետ, մի ձի էլ կառնենք, թող նա տխրի, ով չի կարող աշխատել։

Եվ աշխատեցին մարդ ու կին։ Գյուղացի Հայրապետը իր հողակտորում գործն ավարտելուց հետո, գիշերներն էլ վարձով հարուստների այգիներն էր ջրում, իսկ կինը լվացք էր անում ուրիշների համար։ Այնպես որ, մի տարի չանցած նրանք մի ձի էլ առան՝ ավելի ուժեղը, ավելի գեղեցիկը։ Բայց նոր ուրախությունն էլ երկար չտևեց, մի քանի ամիս անց ավազակները խլեցին գյուղացի Հայրապետի նաև երկրորդ ձին։ Աշխատեց Հայրապետը, առավ երրորդ ձին, էլի խլեցին, չորրորդը՝ նորից խլեցին ու այսպես՝ 10 տարում ավազակները խլեցին նրա քրտինքով ու արյունով ձեռք բերած յոթը ձիերը։ Բայց չհուսահատվեց աղքատ աշխատավորը,

կնոջ, երեխաների հետ միասին համառորեն աշխատեց, աշխատեց գիշեր — ցերեկ ու վերջը էլի մի ձի առավ՝ նախկին բոլոր ձիերից ավելի ուժեղը, ավելի դիմացկունը, ավելի գեղեցիկը: Եվ նորից ձիով էր հանդ գնում գյուղացի Հայրապետը ու ձիով էր հանդից գալիս տուն: Բայց մի գիշեր դաշտից տուն դառնալիս գյուղացի Հայրապետը սարսափով տեսավ, որ ծառից գլուխ զինված մի ավազակ կանգնեց ճանապարհի մեջտեղում: Կանգնեց ավազակը ու գոչեց,

— Վա՛ր իջիր ձիուցդ ու գնա, թե կյանքդ թանկ է:

Սրտի ցավից լաց եղավ գյուղացի Հայրապետը, բայց ելք չկար: «Գնաս բարով» մրմնջաց նա իր դառն աշխատանքի ընկերոջը, վար իջավ ձիուց, սանձը վզին ձգեց, ու գնաց տրտում, գլուխը կախ, աղի արցունք թափելով: Գնում էր գյուղացի Հայրապետը, բայց ականջի մեջ կնոջ մեղմ, հուսադրիչ խոսքերն էին հնչում. «Մի տխրիր, մա՛րդ, կաշխատենք, մեկն էլ կառնենք»: Եվ սրբեց արցունքը գյուղացի Հայրապետը, բարձրացրեց գլուխն ու գնաց, երբ մեկ էլ.

— Կանգնի՛ր, ա՛յ մարդ, — կանչեց ավազակը:

Գյուղացի Հայրապետը կանգ առավ:

— Քեզանից քանի՞ ձի են գողացել, — հարցրեց ավազակը:

— Այս էլ ութերորդն է, — արցունքների միջից պատասխանեց աղքատ աշխատավորը:

Ավազակը մի պահ լռեց, ասես մտքերի մեջ ընկավ:

— Էդ բոլոր ձիերն էլ քեզանից ես եմ խլել, — մոտենալով Հայրապետին ասաց նա, — և ուրիշ շա՜տ-շատ ձիեր եմ գողացել ես, բայց ա՛յ, էլի ինչքան հանդիպել ենք, դու ձիավոր ես եղել, ես՝ հետիոտն: Գնա՛, վերցրու ձիդ ու գնա՛, հալալ լինի քեզ, աշխատող մարդ...





ԼԻՎԻՈՒ ԴԵԼՅԱՆՈՒ

(Մոլդավական բանաստեղծ)

## ՏԵՂԸ ԴՆԵՍ՝ ԿԳՏՆԵՍ

Եղբոր մասին իմ ավագ
Պատմեմ, դուք էլ իմանաք:
Ժամը իննից քիչ պակաս
Նա զարթնում է հազիվ-հազ:
Չորանջում է, կոտրատվում,
Այս կողմ, այն կողմ է թեքվում:
Վերջապես նա վեր կացավ,
Սկսվում է մի նոր ցավ.
Սենյակի մեջ փոփռում,
Իր հագուստներն է փնտրում:
Վարտիքը կա,
Ռետի՛ն չկա.
Կոշիկը կա,
Գուլպան չկա.
Գիրքը գտավ,
Բա տետրա՞կը,
Բոտին հագավ,
Բա գլխա՞րկը...
Վա՜ տ է, վա՜ տ է խեղճի բանը,
Պտտվո՜ւմ է անվերջ տանը,
Ու փնտրում է,
Փնտրում է,
Թախտի վրա, թախտի տակ,
Մտնում հաշտը, ելնում բակ.
Ջքացել է ամեն բան,
Ո՞վ կհասնի օգնության...
Ժամը ինն՛ի՛ց էլ անցավ,
Եվ իմ ավագ եղբայրը
Արդեն դասից ուշացավ:
Իսկ ես թեև փոքր եմ դեռ,
Չունեմ տետրակ ու գրքեր,
Նույնիսկ, ճիշտը թե ասեմ,
Այբբենարա՜ն էլ չունեմ:
Բայց ես, ի՛նչ էլ որ լինի,
Կարգ ու կանոն եմ սիրում.
Հագուստներս հանելիս՝
Այստեղ-այնտեղ չեմ ցրում,
Որ առավոտը արդեն
Ջուր չընկնեմ դես ու դեն:
Տատիս խոսքն եմ հիշում ես՝
«Տեղը դնես՝ կգտնե՛ս»...





## ՔԻԹԸ ԹԱՑ

Նիկուշորը շատ շուտով
Կլինի վեց տարեկան.
Նիկուշորի գրպանում
Ինչե՞ր ասես, որ չկան.
Ե՛լ գույնզգույն
Թղթեր սիրուն,
Խցան,
Աքցան,
Գրիչ ու ծայր.
Տեսակ-տեսակ
Մեխ ու կոճակ,
Բանալինե՜ր,
Ապակինե՜ր,
Ե՛լ հող ու կոճ,
Ե՛լ լուցկիներ...
Ե՛հ, մի խոսքով, ամեն բան,
Բայց իմացեք, որ միայն
Գրպաններում այդ հսկա
Թաշկինակի տեղ չկա:
Դրանից է անկասկած,
Որ Նիկուշորը փոքրիկ
Շրջում է միշտ քիթը՝ թաց,
Գիշեր-ցերեկ քիթը՝ թաց,
Ա՛յ քեզ ամոթ,
Քիթը՝ թա՜ց...

Թարգմ. Ս. ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ.









Մ. Գյուրջյան — Աշունը Ծաղկունք գյուղում



Վ. Խորենյան — Երիտասարդ կնոջ դիմանկար



Գր. Աղաջանյան — Հայելու առաջ

# ԱՅԾՅԱՄ

Կ. ՋԱՋԱՆԻ

(Քուրդ գրող)

Սարերում ու ձորերում
Թավուտներում ցողապատ
Արածում ես օրն ի բուն,
Շրջում անհոգ ու զվարթ:

Բայց երբ տեսնում ես հանկարծ
Մի աղվես կամ գայլի ճուտ,
Անից դու քեզ կորցրած՝
Հեռուներն ես փախչում շուտ:

Մերթ կանգնում ես, նայում ետ,
Դողդողում ու հառաչում,
Մերթ ձորերով սիզապետ
Վազում ես ու բառաչում:

Փախի՛ր ու մեզ մոտ արի,
Սիրուն այծյամ մեր սարի,
Քեզ խնամենք, գուրգուրենք,
Սև աչիկներդ համբուրենք:



Նկ. Գր. ԽԱՆՋՅԱՆԻ

# ԱՄԱՌԸ ՍԱՐԵՐՈՒՄ

ՌԱՍՈՒԼ ՀԱՄԶԱՏՈՎ

(Դաղստանցի գրող)

Սարում արևի
Քունը չի տանում.
Թռչուններից շուտ
Նա՛ է արթնանում:

Հենց որ ծագում է
Վաղորդյան շողը,
Իսկույն շոգում ենք,
Զարթնում է հողը:

Վեն կատարների ձյուներն են հալչում,
Եվ առվակներն են երգում անդադար,
Թավիշ լանջերում հավքերն են թռչում,
Բացվում են, բուրում ծաղիկները վառ:

Ժիր մանուկների
Քունն էլ չի տանում.
Թռչուններից շուտ
Նրա՛նք են զարթնում:

Ու հավքերի հետ մինչև իրիկուն
Երգեր են երգում նրանք զրնգուն:

Երբ ձորն են իջնում
Ջրկատ առ ջրկատ,
Տխրում են, լռում
Լեռները հպարտ:

Ծփում է քամուց
Ծովը հասկերի,
Հասակն է ծածկում
Ջրկատավարի:

Խնդում են զվարթ
Լեռները նորից.
Ջրկատը կրկին
Ելնում է ձորից:

Շուտով անձրևը նրանց կթրջի,
Բաց կանի հովիվն իր սև յափնջին

Ու կառնի նրանց
Իր յափնջու տակ՝
Ինչպես ծագերին՝
Արծիվն համարձակ:

Միայն թե չկա հետքն էլ անձրևի,
Երկինքը անամպ, թափանցիկ ու ջինջ,
Շոյում են քնքուշ շողերն արևի,
Ոսկի հավքերն են երգում բերկրալից:

Դեղձերն են ահա
Հասնում բակերում.
Օ՛, որքան լա՛վ է
Ամառը սարում:

Թարգմ. Ս. ՄԿՐՏՉՅԱՆ

# Բարեկամը՝ ՇՏԱՊ Օգնություն



(Կատակերգություն մեկ գործողությամբ)

Գ. ՅԱՂՋՅԱՆ

Նկ. Ս. ՍԱՖԱՐՅԱՆԻ

ԳՈՐԾՈՂ ԱՆՁԵՐ

ՊԵՏԻԿ . . . . . . . Դպրոցական, 15 տարեկան
ԱԼՄԱՍՏ . . . . . . . Նրա տատը, 60 տարեկան
ՀԱՍՄԻԿ . . . . . . Ջոկատավար, 17 տարեկան
ԱՇՈՏԻԿ . . . . . . Դպրոցական, 9 տարեկան

*Գործողությունը տեղի է ունենում Երևանում։*

## ՊԱՏԿԵՐ ԱՌԱՋԻՆ

Խուլ անկյուն պարտեզում։ Ծառ, նստարան։ Մտնում են Պետիկն ու Աշոտիկը։

ՊԵՏԻԿ— (համոզվելով որ շուրջը մարդ չկա) Նստիր, հիշու՞մ ես, որ ինձ խնդրում էիր, քեզ հետ ընկերություն անել։

ԱՇՈՏԻԿ— Հիշում եմ։

ՊԵՏԻԿ— Ես երկար մտածեցի ու տեսա, որ իրավունք չունեմ չհամաձայնվելու։

ԱՇՈՏԻԿ— Ինչի՞...

ՊԵՏԻԿ— Իհարկե... մենք միևնույն դպրոցում ենք սովորում, ապրում ենք միևնույն բակում... Համարյա միշտ իրար հետ ենք լինում, առավոտները միասին ենք դպրոց գնում։ Ճիշտ չէ՞...

ԱՇՈՏԻԿ— Ճիշտ է։

ՊԵՏԻԿ— Դե էլ ինչի՞ պիտի ընկերներ չլինենք... Ի՞նչ անենք, որ դու ինը տարեկան ես իսկ ես՝ տասնհինգ։ Սրանից հետո՝ վերջ, իմ ամենամոտ ընկերը դու ես։

ԱՇՈՏԻԿ— Ճի՞շտ... ուրեմն էլ չե՞ս ասի, որ իմ կաթ ուտելու ժամանակն է։

ՊԵՏԻԿ— Ո՛չ մի կաթ ուտել, սրանից հետո մենք իրար համար ոչինչ չենք խնայելու, հասկացա՞ր...

ԱՇՈՏԻԿ— Հասկացա... սենակ, էլ կինո-դերասանի նկար չունեմ, էն երկուսը քրոջիցս էի թռցրել։

ՊԵՏԻԿ— Կինո-դերասանի նկար պետք չէ... իրար կինո-դերասանի նկարներ նվիրելը, որպես հասարակ կետ, իսկական ընկերության օրենքներից արդեն հանված է։

ԱՇՈՏԻԿ— Տես է՜... Մի քիչ շուտ՞որ հանված լիներ, քույրս ինձ չէր ծեծի։

ՊԵՏԻԿ— Ուրեմն համաձայն ես, որ ընկերներ լինենք։

ԱՇՈՏԻԿ— Համաձայն եմ։

ՊԵՏԻԿ— գիտես չէ՞, որ իսկական ընկերության օրենքների մեջ, առաջին կետը գաղտնապահության մասին է։

ԱՇՈՏԻԿ— Գիտեմ։

ՊԵՏԻԿ— Հիմա, որ քեզ մի բան ասեմ, ոչ ոքի չե՞ս ասի։

ԱՇՈՏԻԿ— Չեմ ասի։

ՊԵՏԻԿ— Երդվիր։

ԱՇՈՏԻԿ— Հայրիկիս արևը։

ՊԵՏԻԿ— Դե լսիր, վաղը, երրորդ դասին, 5-րդ «բ»-ում, այսինքն՝ մեր դասարանում, հայոց լեզվի ստուգողական աշխատանք է լինելու... (բազմանշանակալից) վերջին քառորդինը։

ԱՇՈՏԻԿ— Հետո՞...

ՊԵՏԻԿ— Հետո այն, որ եթե վաղն էլ «երկու» ստացա, կորած եմ, երեք հատ «երկու» արդեն դասամատյանում կա, սա էլ որ գումարվի, քառորդի թվանշանս հայոց լեզվից «երկու» կդառնա։

ԱՇՈՏԻԿ— Հետո՞...

ՊԵՏԻԿ— էլ ի՞նչ հետո։

ԱՇՈՏԻԿ— Դեհ, գաղտնիքդ ասա։

ՊԵՏԻԿ— Ասում եմ է՛լի, ես առանց այն էլ թվաբանությունից «երկու» ունեմ։

ԱՇՈՏԻԿ— Դա ինչ գաղտնիք է, որ...

ՊԵՏԻԿ— Քիչ խոսիր, մինչև վերջը լսի... եթե հայերենս էլ «երկու» լինի, արդեն «երկու» հատ «երկու» կունենամ թվաբանությունից ու հայերենից, էն ժամանակ ուզեմ-չուզեմ պիտի նորից հինգերորդում մնամ։

ԱՇՈՏԻԿ— Հինգերորդու՞մ... Մի մնա Պետիկ ջան, շատ եմ խնդրում... առանց էն էլ բոյդ տասներորդի է։

ՊԵՏԻԿ— Դե, թե չես ուզում մնամ, պիտի որպես



ընկեր օգնես ինձ:

ԱՇՈՏԻԿ— Ի՞նչ պիտի անեմ:

ՊԵՏԻԿ— Ընկեր Լոռեցյանին գիտես չէ՞:

ԱՇՈՏԻԿ— Հայոց լեզվի՞...

ՊԵՏԻԿ— Ըհը՛. նա մեր դասղեկն է. վաղը կգնաս դպրոց ու նրան կասես, թե առավոտյան եկել ես մեր տուն. որ իրար հետ դպրոց գնանք ու տեսել ես, որ ես վառվում եմ:

ԱՇՈՏԻԿ— Վառվում ե՞ս... իսկակա՞ն:

ՊԵՏԻԿ— Իսկական:

ԱՇՈՏԻԿ—Մենակ դո՞ւ, թե ձեր տունն էլ...

ՊԵՏԻԿ— Ի՞նչ տուն, ինչ բան, մենակ ես: Կասես, որ տեսել ես ինձ տաքության մեջ վառվելիս... հասկացա՞ր...

ԱՇՈՏԻԿ— Հասկացա... կասեմ սխալմամբ... նավթ ես թափել վրադ ու լուցկին կպցրել...

ՊԵՏԻԿ— Լսիր, որ խփեցի չորս օր տեղիցդ ելնել չես կարողանա:

ԱՇՈՏԻԿ— Ինչի՞...

ՊԵՏԻԿ— Ասայի ը՛նկերներ ենք, հո չասացի թիզուկես հալովդ ձեռ առնես...

ԱՇՈՏԻԿ— Ո՞վ, ե՞ս... ու՞մ եմ ձեռ առնում:

ՊԵՏԻԿ— Ինձ, ու՞մ... ի՛նչ նավթ, ի՛նչ լուցկի: Քեզ ասում եմ սաս տաքության մեջ վառվում եմ, իսկ դու...

ԱՇՈՏԻԿ— Դե բոլոր վառվողներն էլ... սպասիր, դու ի՞նչ տաքությունից ես ուզում վառվել:

ՊԵՏԻԿ— Իմ տաքությունից, դմբո՛...

ԱՇՈՏԻԿ— Քո՞... իսկ քեզ էդքան տաքություն որտեղի՞ց:

ՊԵՏԻԿ— Հիվանդ եմ, հիվանդ, հասկացի՛ր:

ԱՇՈՏԻԿ— Դու՞... որ հիվանդ ես, ինչի՞ չես տընքում:

ՊԵՏԻԿ— Ես վաղը պիտի հիվանդանամ... հասկացա՞ր, վաղը...

ԱՇՈՏԻԿ— Հասկացա, վաղը... Իսկ դու որտեղի՞ց գիտես, որ պիտի հիվանդանաս:

ՊԵՏԻԿ— Օ՜ֆ... հոգի հանեցի՛ր, ասացի չէ՛, որ վաղը ստուգողական աշխատանք է լինելու:

ԱՇՈՏԻԿ— Ի՞նչ անենք լինելու է, երեկ մեր դասարանում ստուգողական էր, բա ինչի՞ ոչ մեկը չհիվանդացավ:

ՊԵՏԻԿ— (սպառնական) Լսի՛ր...

ԱՇՈՏԻԿ— Հայրիկի արևը՝ ոչ ո՛ք չհիվանդացավ:

ՊԵՏԻԿ— Ա՛յ քեզ անխելք տղա... լսիր, ահագին տղա ես, մի հասարակ բան չես հասկանում:

ԱՇՈՏԻԿ— Ո՞վ, ե՞ս...

ՊԵՏԻԿ— Դո՛ւ, դո՛ւ... Ես իսկական չեմ հիվանդանալու, այլ ստից, որպեսզի դպրոց չգնամ, հասկացա՞ր...

ԱՇՈՏԻԿ— Հասկացա... իսկ ինչի՞ չես ուզում դպրոց գալ...

ՊԵՏԻԿ— Հիմի, ինչ է, նորից սկզբի՞ց սկսեմ... հասկացիր, չեմ ուզում ստուգողականին մասնակցել, որ «երկու» չստանամ... մի բանը տասն անգամ չեն ասի:

ԱՇՈՏԻԿ— Հա՜... դե էդպես ասա է՛լի:

ՊԵՏԻԿ— Էդպես եմ ասում է՛լի:

ԱՇՈՏԻԿ— Իսկ ի՞նչ գիտես, որ անպայման «երկու» ես ստանալու:

ՊԵՏԻԿ— Գիտեմ, ես մի տողի մեջ չորս-հինգ տառասխալ եմ անում:

ԱՇՈՏԻԿ— Ինչի՞:

ՊԵՏԻԿ— Որովհետև քերականական օրենքները չգիտեմ:

ԱՇՈՏԻԿ— Իսկ ինչի՞ չգիտես:

ՊԵՏԻԿ— Որո՛վհետև հենց սկզբից լավ չեմ սովորել:

ԱՇՈՏԻԿ— Իսկ ինչի՞ լավ չես սովորել:

ՊԵՏԻԿ— Որովհետև ես հայոց լեզուն չեմ սիրում:

ԱՇՈՏԻԿ— Բա ո՞ր լեզուն ես սիրում:

ՊԵՏԻԿ— Ոչ մի լեզու էլ չեմ սիրում:

ԱՇՈՏԻԿ— Ինչի՞...

ՊԵՏԻԿ— Որովհետև... որովհետև... դմբո՛ ես:

ԱՇՈՏԻԿ— Ո՞վ, ե՞ս...

ՊԵՏԻԿ— Չէ, ե՛ս:

ԱՇՈՏԻԿ— Հա՜... թե չէ զարմացա, հայոց լեզուն դու չգիտես, ու կարծեցի ինձ ես ասում դմբո...

ՊԵՏԻԿ— Լսիր, ուզու՞մ ես, որ երեք տարվա սովորածդ մի րոպեում գլխիցդ դուրս թռչի:

ԱՇՈՏԻԿ— Չեմ ուզում, ես էլ դմբո կդառնամ:

ՊԵՏԻԿ— Ուրեմն ես դմբո եմ, հա՞... (բռնում է նրան):

ԱՇՈՏԻԿ— (ջանալով ազատվել) Ի՞նչի․ես կպչում, դու ինքդ ասացիր:
ՊԵՏԻԿ— (սեղմելով նրա վզակոթը) Ո՞վ է դմբո...
ԱՇՈՏԻԿ— (նեղն ընկած) Չգիտեմ...
ՊԵՏԻԿ— Ասա դմբոն ես եմ:
ԱՇՈՏԻԿ— (լացակումած) Դե ասում եմ էլի:
ՊԵՏԻԿ— Նորից ասա...
ԱՇՈՏԻԿ— Չեմ ասի, ծեծում ես:
ՊԵՏԻԿ— Որ ասես, չեմ ծեծի... ասա դմբո եմ:
ԱՇՈՏԻԿ— Դմբո ես:
ՊԵՏԻԿ— Առ՛ քեզ դմբո:
ԱՇՈՏԻԿ— Մամա՜...
ՊԵՏԻԿ— Ասա, որ դմբոն դու ես, ոչ թե ես:
ԱՇՈՏԻԿ— Դմբոն դու ես, ոչ թե ես...
ՊԵՏԻԿ— (հուսահատ) Լսի՛ր, ինչ որ կասեմ չկրկնես, մենակ հարցիս պատասխանիր. դու ո՞վ ես:
ԱՇՈՏԻԿ— Աշոտիկը:
ՊԵՏԻԿ— Իսկ ես ո՞վ եմ:
ԱՇՈՏԻԿ— Պետիկը:
ՊԵՏԻԿ— Հիմա մեզանից ո՞վ է դմբոն:
ԱՇՈՏԻԿ— Մեզանի՞ց... ո՞ւմ ասեմ, որ չծեծես:
ՊԵՏԻԿ— (մատով Աշոտին ցույց տալով) Ասա դու ես:
ԱՇՈՏԻԿ— (մատով Պետիկին ցույց տալով) Դու ես:
ՊԵՏԻԿ— Ես չեմ, դու՛մ, դու՛ ես.
ԱՇՈՏԻԿ— Ես չեմ,դդում, դու՛ ես...
ՊԵՏԻԿ— Քե՛զ եմ ասում, դմբո՛...
ԱՇՈՏԻԿ— Քեզ եմ ասում...
ՊԵՏԻԿ— (փակելով նրա բերանը) Էլ չխոսես... ո՛չ մի խոսք չասես, թե չէ... թե չէ կսպանեմ: Հասկացա՞ր (Աշոտիկը գլխով հաստատում է) էլի կասե՞ս, դմբո եմ (Աշոտիկը գլխով բացասում է: Պետիկը բաց է թողնում նրան: Պաուզայից հետո) էդ հալով էլ դեռ ուզում ես իսկական ընկեր լինել... Ես դժվար դրության մեջ եմ. վեց տարում հազիվ չորս դասարան եմ անցել, հիմա էլ վտանգ կա, որ հինգերորդում մնամ... Իսկ դու փոխանակ օգնելու, կպել ես, թե դմբո եմ:

ԱՇՈՏԻԿ— Ես ի՛նչ անեմ, ծեծում ես, թե ասա դմբո եմ:
ՊԵՏԻԿ— Լսիր, հասկացիր. քու ասելով դմբոն ես էի դուրս գալիս...
ԱՇՈՏԻԿ— Բա ո՞վ պիտի դուրս գար:
ՊԵՏԻԿ— Դու, ով...
ԱՇՈՏԻԿ— Ինչի՞...
ՊԵՏԻԿ— Ինչի, ինչի... ես ի՞նչ գիտեմ ինչի... հիմի օգնելո՞ւ ես ինձ, թե չէ:
ԱՇՈՏԻԿ— Ի՞նչ անեմ... դմբոն ես լինե՞մ...
ՊԵՏԻԿ— Չէ, էդ մասին չի խոսքս... Վաղն ընկեր Լոռեցյանին կասե՞ս, որ հիվանդ եմ...
ԱՇՈՏԻԿ— Ստի՞ց...
ՊԵՏԻԿ— Չէ, իսկական, կասես իսկական հիվանդ է...
ԱՇՈՏԻԿ— Բա որ հանկարծ չհիվանդանա՞ս...
ՊԵՏԻԿ— Կհիվանդանամ... կպառկեմ ու կսկսեմ տնքալ... Դեհ, կասե՞ս...
ԱՇՈՏԻԿ— Կասեմ... մենակ էնպես արա, որ տաքություն էլ ունենաս, թե չէ, արդեն պիոներ եմ, սուտ ասելու իրավունք չունեմ...
ՊԵՏԻԿ— Լա՛վ, լա՛վ, տաքություն էլ կունենամ...
ԱՇՈՏԻԿ— Քանի՞ աստիճան:
ՊԵՏԻԿ— Երեսունյոթ, երեսունութ...
ԱՇՈՏԻԿ— (մտածկոտ) Իսկ չի կարելի՞, որ քառասունութ ունենաս... թող մի քիչ շատ լինի:
ՊԵՏԻԿ— Կարելի է... Ես քեզ նման չեմ, ընկերոջ համար կյանքս էլ չեմ խնայի:
ԱՇՈՏԻԿ— Իսկ ի՞նչ գիտես, որ ես կխնայեմ:
ՊԵՏԻԿ— Ուրեմն վաղը կասե՞ս:
ԱՇՈՏԻԿ— Կասեմ:
ՊԵՏԻԿ— Իսկ տաքության մասին դու ապահով եղիր, ինչքան քեֆդ տա՝ կունենամ: Հիսունութ, վաթսունութ... (ինչ-որ մեկին նկատելով) Վա՛յ, մեր ջոկատավարն է գալիս, ընկեր Հասմիկը:
ԱՇՈՏԻԿ— Հետո՞ ինչ, որ գալիս է:
ՊԵՏԻԿ— Գնանք, թող ինձ չտեսնի, թե չէ կորած եմ:
ԱՇՈՏԻԿ— Ինչի՞...
ՊԵՏԻԿ— (ջղային) Ինչի՛, ինչի՛... (հանկարծ տեղում կծկվելով, որպեսզի եկողն իրեն չնկատի) Հիվանդ եմ, չէ՞, դմբո՛... ցանվի՛ր: (կուզեկուզ, համարյա գետնին կպած փախչում է):





ԱՍՏՂԻԿ— (զարմացած նրա երեսին նայելով) Ցանվե՞մ... Չէ՛, չի խաբում... արդեն տաքությունը բարձրանալ սկսեց:

(Հասմիկը ընդհանուր տետրից կարդալով, դանդաղաքայլ գալիս է, հարևանցի հայացք նետում Աստղիկի վրա և նստարանի ծայրին տեղավորվելով սկսում է ինչ-որ նշումներ անել: Աստղիկը նախ կամենում է հեռանալ, ապա մտադրությունը փոխելով, նստում է Հասմիկի կողքին):

ԱՍՏՂԻԿ— (պաուզայից հետո) Ուզո՞ւմ ես ասեմ՝ դու ով ես:

ՀԱՍՄԻԿ— Ե՞ս: Ո՞վ եմ:

ԱՍՏՂԻԿ— Ընկեր Հասմիկը:

ՀԱՍՄԻԿ— (ժպտալով) Ընկեր Հասմի՞կը... որտեղի՞ց իմացար:

ԱՍՏՂԻԿ— Պետիկն ասաց...

ՀԱՍՄԻԿ— Ո՞ր Պետիկը:

ԱՍՏՂԻԿ— Մեր բակի Պետիկը... Նա, որ վեց տարում չորս դասարան է անցել ու տասներորդի բոյ ունի:

ՀԱՍՄԻԿ— (ժպտալով) Տասներորդի բո՞յ...

ԱՍՏՂԻԿ— Ըհը՛... դու իրենց ջոկատավարն ես հինգերորդ «բ»-ի:

ՀԱՍՄԻԿ— Պետիկ Խնկոյա՞նը...

ԱՍՏՂԻԿ— Ըհը՛... քիչ առաջ էստեղ էր, քեզ որ տեսավ, ասաց. «Գնանք, թող ինձ չտեսնի, թե չէ կորած եմ»:

ՀԱՍՄԻԿ— Ինչո՞ւ...

ԱՍՏՂԻԿ— Սկզբում ես էլ զարմացա, բայց հետո հասկացա, որ տաքությունն է սկսել բռնել:

ՀԱՍՄԻԿ— Ի՞նչ տաքություն:

ԱՍՏՂԻԿ— Էն տաքությունը, որի մեջ ինքը վառվելու է... ինձ ասել է, որ վաղը գնամ իմաց տամ:

ՀԱՍՄԻԿ— Ու՞մ, հրշեջ խմբի՞ն...

ԱՍՏՂԻԿ— Ի՞նչ հրշեջ խումբ, իրենց դասղեկին...

ՀԱՍՄԻԿ— Եթե նա վառվելու է, դասղեկն ի՞նչ կարող է անել: Դու, ավելի լավ է, հրշեջ խմբին հայտնիր, որ գան հանգցնեն:

ԱՍՏՂԻԿ— (քմծիծաղով) Կարծում ես իսկակա՞ն է վառվելու, չէ՛... տաքությունից, տաքությունից, էն որ ջերմաչափով են չափում... Հիվանդանալու է, հասկանու՞մ ես:

ՀԱՍՄԻԿ— Ախ՛, հիվանդանալու՛ է...

ԱՍՏՂԻԿ— Իհա՛րկե:

ՀԱՍՄԻԿ— Իսկ եթե հանկարծ չհիվանդանա՞:

ԱՍՏՂԻԿ— Անպայման կհիվանդանա, պետք է:

ՀԱՍՄԻԿ— Ու՞մն է պետք:

ԱՍՏՂԻԿ— Պետիկին, ո՞ւմ... որ չհիվանդանա, այս տարի էլ հինգերորդումն է մնալու, նրանց դասարանում վաղը հայերենից ստուգողական է լինելու, իսկ Պետիկը... (հանկարծ) Վա՞յ...

ՀԱՍՄԻԿ— Պետիկն ի՞նչ...

ԱՍՏՂԻԿ— Չգիտեմ:

ՀԱՍՄԻԿ— Ճիշտ չես ասում, գիտես:

ԱՍՏՂԻԿ— Գիտեմ, բայց չեմ ասի: Իսկական ընկերության օրենքների մեջ, առաջին կետը գաղտնապահությունն է:

ՀԱՍՄԻԿ— Դու մոռանում ես, որ ես Պետիկի ջոկատավարն եմ:

ԱՍՏՂԻԿ— Հետո ի՞նչ, որ ջոկատավարն ես... Պետիկն իմ ընկե՞րն է, ընկերն է: Որպես ընկեր ասե՞լ է, որ վախենում է երկու ստանալ, ասել է: Իրավունք ունե՞մ գաղտնիքն ուրիշին հայտնելու, իհարկե՝ չունեմ...

ՀԱՍՄԻԿ— Պարզ է:

ԱՍՏՂԻԿ— Դեռ էլի հայրիկիս արևով երդված չլինեի, ուրիշ բան, թե չէ, հիմա իզուր չխնդրես, միևնույն է, ոչինչ չեմ ասի, հասկացա՞ր:

ՀԱՍՄԻԿ— Հասկացա:

ԱՍՏՂԻԿ— Էդպես: Չկարծես, թե որ փոքր եմ, ընկերոջս գաղտնիքը հեշտությամբ կպոկես ինձանից: Ցտեսություն: (խեթ նայելով Հասմիկին, հեռանում է):

ՀԱՍՄԻԿ— (նրա երեսին ծիծաղելով) Ցտեսություն, գաղտնապահ ընկեր... Վաղը չմոռանաս, ընկերոջդ վառվելու մասին հայտնել նրա դասղեկին:

Վարագույր

## ՊԱՏԿԵՐ ԵՐԿՐՈՐԴ

Արևոտ սենյակ Պետիկենց տանը: Կեսօր է: Պետիկը շորերը հագին. նստել է անկողնում և ջանում է շփելով բարձրացնել ջերմաչափի սնդիկը:

Հանկարծ ոտնաձայն լսելով ջերմաչափը դնում է թևի տակ, շտապ ծածկվում վերմակով ու տնքում:

ԱԼՄԱՍՏ— (մտնում է բաժակով ջուրը ձեռքին) Պետիկ ջան, էլի ցավո՞ւմ է :

ՊԵՏԻԿ— Հա, տատի ջան, ը՛հ... ցավում է, ը՛հ...

ԱԼՄԱՍՏ— Դե, բալա ջան, որ էդքան ցավում է, թող գնամ մարդ ուղարկեմ, մորդ իմաց տան, աշխատանքից գա:

ՊԵՏԻԿ— Չէ՛ չէ՛... ը՛հ... կանչնի... օ՜ֆ...

ԱԼՄԱՍՏ— Էս ինչ կրակ էր ստված գլխներիս բեբեց... առավոտը սաղ–սալամաթ էիր...

ՊԵՏԻԿ— Միանգամից սկսեց ցավել... ը՛հ... ուֆ... օ՜ֆ... է՜ֆ...

ԱԼՄԱՍՏ— Ջուր ուզեցիր, չես խմո՞ւմ:

ՊԵՏԻԿ— Չէ՛...ը՛հ... (ջերմաչափը նրան պարզելով) Առ, տատի ջան, նայի՛ր...ը՛հ, ը՛հ...

ԱԼՄԱՍՏ— (ջերմաչափը մի պահ այս ու այն կողմ դարձնելուց հետո, վերջապես կարողանում է որոշել ջերմաստիճանը) Վա՜յ, կուրանամ ես, քառասունն անցել է:

ՊԵՏԻԿ— Ը՛հ... ը՛հ...

ԱԼՄԱՍՏ— Գնամ, էս մեր կողքի պրոֆեսորին ասեմ, իրանց տելեֆոնով սկորի պոմոշը կանչի... (շտապում է դուրս):

ՊԵՏԻԿ— (վախեցած նստելով անկողնում) Տատի՜... տատի ջա՜ն, սպասի՛ր...

ԱԼՄԱՍՏ— (արդեն դրսից) Գալիս եմ, Պետիկ ջան, գալիս եմ...

ՊԵՏԻԿ— (մենակ է) Ա՛յ քեզ բան, խայտառակ պիտի լինենք... (դեպի դուրս վազելով) Տատի՜...տատի՜... (հուսահատ) Գնաց... Բժիշկը որ եկավ՝ կորած եմ, ամեն ինչ կհասկանա: (Վերցնելով Ալմաստի թողած ջերմաչափը) Ո՞վ էր քեզ ասում, քառասունն անցնես, կրակն ընկա՜նք, որ մի քիչ շփեցինք... (Ինքնիրեն) Զփախչե՞մ... չէ՛, չէ՛, տատիկը կկարծի տաքության մեջ, ելել եմ փախել, վախից ուշքը կգնա... (ջղային) Ա՜խ, էդ հայերենը... (վճռական) Չէ՛, էստեղ մնալ չի կարելի, շտապ օգնությունը իսկական հիվանդներին է ասում «հիվանդ չես», ու՞ր մնաց ինձ: (Հագնում է կոշիկները, խոսում է ամրացնելով կապերը) Տատիկի ուշքը գնում է, թող գնա, միևնույն է, շտապ օգնությունը գալու է, նորից ուշքի կբերի... (կապելով պիոներական վզկապը) Բոլորի պատճառը ընկեր Լոռեցյանն է, հենց որ դասամատյանը բացում է՝ «Խնկոյան, կարդա...», «Խնկոյան, քերականական օրենքն ասա...», կարծես միայն ես եմ դասարանում... Երեք հատ «երկուսը» թե չլիներ դասամատյանում, մի ստուգողականն ի՞նչ է որ... (Դռան զանգ: Պետիկը վախեցած դռանն է նայում: Զանգը կրկնվում է: Պետիկը մտնում է անկողին և գլուխը վերմակով ծածկում: Գալիս է Համիկը:)

ՀԱՄԻԿ— (շուրջը նայելով) Ո՞վ կա տանը... (Պետիկը վերմակի տակ ավելի է կծկվում: Համիկը նկատում է այդ) Տանը ոչ ոք չկա՞... ա՛յ քեզ բան, ուրեմն, ճիշտ չէին ասում, թե Պետիկ Խնկոյանը տանը հիվանդ պառկած, տաքության մեջ վառվում է...



ՊԵՏԻԿ— (սկսում է տնքալ) Ը՛հ... ը՛հ... ը՛հ...

ՀԱՄԻԿ— (իբր թե ինքնիրեն) Կարծես թե մեկը տնքում է: Երևի Պետիկն է:

ՊԵՏԻԿ— Ը՛հ... ը՛հ... օ՜ֆ...

ՀԱՄԻԿ— (շարունակելով ձևացնել) Չ՛է, սա Պետիկը չի կարող լինել, պառավ կնոջ տնքոցի է նման:

ՊԵՏԻԿ— (գլխի կեսը բացելով) Վա՜յ... վա՜յ, գլուխս...

ՀԱՄԻԿ— Խնկոյա՞ն, այդ դու՞ ես...

ՊԵՏԻԿ— (հիվանդի նման) Ես եմ, ընկեր Համիկ:

ՀԱՄԻԿ— Ի՞նչ է պատահել: (մոտ նստելով) Վա՞տ ես զգում քեզ:

ՊԵՏԻԿ— Էն-էլ ինչքա՜ն...

ՀԱՍՄԻԿ— Ինչքա՞ն:

ՊԵՏԻԿ— Շատ:

ՀԱՍՄԻԿ— Տես է, դպրոցում խոսում էին, չէի հավատում, ախր անցյալ հավաքի օրը դու բոլորովին առողջ էիր: Զլինի՞ տղաների այն օրվա քննադատությունն է ազդել վրադ:

ՊԵՏԻԿ— Երևի:

ՀԱՍՄԻԿ— Ըստ երևույթին, գլուխդ է ցավում, այդպիսի դեպքերում մարդու գլուխն է սկսում ցավել: Գլուխդ է, չէ՞:



ՊԵՏԻԿ— Գլուխս է:

ՀԱՍՄԻԿ— Իսկ տաքություն ունե՞ս... դպրոցում ասում էին, թե տաքության մեջ ուղղակի վառվում ես: Ճի՞շտ է:

ՊԵՏԻԿ— Իհարկե, ճիշտ է, 40 աստիճանն անցել է:

ՀԱՍՄԻԿ— Դա վատ նշան է, այդքան բարձր ջերմություն հաճախ պատահում է այն ժամանակ, երբ մարդ փորացավ է ունենում. քո փորն ինչպե՞ս է, չի՞ ցավում:

ՊԵՏԻԿ— Ցավում է:

ՀԱՍՄԻԿ— Ուրեմն, քո փորն է ցավում:

ՊԵՏԻԿ— Իհարկե:

ՀԱՍՄԻԿ— Եվ գլուխդ մի տեսակ հաճելի թմրության մեջ է... կարծես բոլորովին գոյություն չունի... չէ՞...

ՊԵՏԻԿ— Ըհը՛... ոնց որ ուսերիս վրա ոչինչ չկա:

ՀԱՍՄԻԿ— Այդ դեպքում քո ի՞նչն է ցավում:

ՊԵՏԻԿ— Փորս, ի՛նչս:

ՀԱՍՄԻԿ— Իսկ ես կարծեցի՝ գլուխդ:

ՊԵՏԻԿ—Չէ՛... փորս է, ընկեր Հասմիկ:

ՀԱՍՄԻԿ— Դա շատ լուրջ հիվանդություն է... Որտեղի՞ց կպավ քեզ: Ափսո՜ս, գոնե մի երկու օր հետո հիվանդանայիր:...

ՊԵՏԻԿ— Ինչու՞:

ՀԱՍՄԻԿ— Շատ վատ ժամանակ հիվանդացար, շա՜տ...

ՊԵՏԻԿ— Ինչու՞, ընկեր Հասմիկ:

ՀԱՍՄԻԿ— Հասկանու՞մ ես, Դեմիրճյանի անվան դպրոցի հինգերորդ «բ»-ի պիոներները ֆուտբոլային թիմ են կազմակերպել ու մրցման են հրավիրում մեզ: Մենք էլ, առանց իմանալու, որ դու պիտի հիվանդանաս, վերցրինք ու մրցումը վաղը նշանակեցինք...

ՊԵՏԻԿ— (ցնցվելով) Վա՞ղը...

ՀԱՍՄԻԿ— Դե, իհարկե, մինչև մյուս կիրակի չարժեր հետաձգել: (Պետիկը մտածում է) Հիմա եթե հրաժարվենք կամ խաղը հետաձգենք, կարող են կարծել, թե վախեցանք:

ՊԵՏԻԿ— (կռվարար) Ու՞մից...

ՀԱՍՄԻԿ— Իրենցից... առանց այն էլ երեկ պարծենում էին:

ՊԵՏԻԿ— Որ ի՞նչ...

ՀԱՍՄԻԿ— Որ իբր թե մի նոր կենտրոնական հարձակվող են պատրաստել, ասում էին նրա հարված գնդակը, Պետիկը չէ, Պետիկի մեծ եղբայրն էլ չի կարողանա բռնել:

ՊԵՏԻԿ— Առաջինը՝ ես մեծ եղբայր չունեմ, իսկ երկրորդը՝ այդ մենք դեռ կտեսնենք...

ՀԱՍՄԻԿ— Էլ ի՞նչ տեսնել, անկողնում պառկած հո չե՛ս բռնելու նրա գնդակները: Մրցումը վաղն է, իսկ դու հիվանդ ես:

ՊԵՏԻԿ— Վաղը ես կառողջանամ:

ՀԱՍՄԻԿ— Ի՞նչ ես ասում, քո հիվանդությունն այնպիսին է, որ ամենաքիչը մի ամիս դեռ պիտի բուժվես:

ՊԵՏԻԿ— Ես խաղից հետո՛ կբուժվեմ:

ՀԱՍՄԻԿ— Ո՛չ մի դեպքում... ավելի լավ է մենք վաղը հաղթվենք, քան քո հիվանդությունն ավելի բարդանա... Ես ընկեր Աստրյանին կասեմ, թող վաղը Գագիկին կանգնեցնի դարպասում:

ՊԵՏԻԿ— Գագիկի՞ն, (նստելով անկողնում) Որ նրանք տասնեն ու հետո պարծենա՞ն...

ՀԱՍՄԻԿ— Դու, ինչ է, վերնազգեստո՞վ ես անկողին մտել:

ՊԵՏԻԿ— (արագ ծածկվելով վերմակի տակ) Ես մրսում էի:
ՀԱՄԼԻԿ— Ամառվա այս շոգի՞ն:
ՊԵՏԻԿ— Ես հիվանդ եմ չէ՞, տաքության մեջ վառվում եմ:
ՀԱՄԼԻԿ— Այո՛, տաքությունի՞ց էիր մրսում, դա ուրիշ բան... իսկ վզկա՞պդ, նու՞յնպես չմրսելու համար կապեցիր:
ՊԵՏԻԿ— Ի՞նչ վզկապ... սա՞, սա ես չեմ կապել...
ՀԱՄԼԻԿ— Ուրեմն, ինքնիրե՞ն է կապվել...
ՊԵՏԻԿ— Այսինքն, ես եմ կապել, բայց տաքության մեջ եղած ժամանակ... (վզկապը հանելով վզից, դժգոհ դնում է մի կողմ):
ՀԱՄԼԻԿ— Իսկ հիմա տաքությունդ անցա՞վ, որ հանեցիր:

ՊԵՏԻԿ— Դմբո՞ն է մատնել...
ՀԱՄԼԻԿ— Ոչ ոք չի մատնել: Ջայլամի նման գլուխդ պահել ես ավազի մեջ և կարծում ես, թե ինչպես դու ուրիշներին չես տեսնում, այնպես էլ ուրիշները քեզ չեն տեսնի...
ՊԵՏԻԿ— Միևնույն է, նա իմ ձեռքից չի պրծնի:
ՀԱՄԼԻԿ— Դու ավելի լավ է մտածիր, թե ինքդ ինչպես ես պրծնելու ընկերներիդ ծաղրանքից... Դու՛րս եկ անկողնուց... (խիստ) դո՛ւրս եկ, ասում եմ (Պետիկը դժկամ ելնում է, կանգնում հատակին: Համլիկը նկատում է, որ նա կոշիկներով է, մռայլվում է) Պիոներին նայեցեք, կոշիկներով մտել է անկողին:
ՊԵՏԻԿ— (գլուխը կախ, կամակոր) Դա իմ գործն է:



ՊԵՏԻԿ— Անցավ:
ՀԱՄԼԻԿ— Իսկ փորացա՞վդ:
ՊԵՏԻԿ— Փորս չի անցել:
ՀԱՄԼԻԿ— Փորդ գիտեմ, որ չի անցել, ես փորացավիդ մասին եմ հարցնում:
ՊԵՏԻԿ— Ես էլ ցավն եմ ասում է՛լի:
ՀԱՄԼԻԿ— Իսկ ինչպե՞ս անենք, որ ցավն էլ անցնի:
ՊԵՏԻԿ— Չգիտեմ:
ՀԱՄԼԻԿ— Ուզու՞մ ես ասեմ միջոցը:
ՊԵՏԻԿ— (բեռնամական) Ասա:
ՀԱՄԼԻԿ— Կվերցնես հայոց լեզվի դասագիրքը և, ինչպես հարկն է, քերականական օրենքները կսովորես:
ՊԵՏԻԿ— Քերականական օրենքները կապ չունեն ցավի հետ:
ՀԱՄԼԻԿ— Ունեն... Եթե չունենային, հիմա դու ձեր դասարանում նստած կլինեիր ու առանց վախենալու ստուգողական թելադրությունը կգրեիր... (Պետիկը գլուխը կախում է) Դե՜հ, ինչպե՞ս, կապ ունե՞ն...

ՀԱՄԼԻԿ— Ինչպե՞ս ես խոսում ջոկատավարիդ հետ: Զգա՛ստ... (Պետիկն ակամա զգաստ է կանգնում) Սեղանի շուրջը վազքով մա՛րշ... մե՛կ, երկո՛ւ... մե՛կ, երկո՛ւ... մե՛կ, երկո՛ւ... (Պետիկը Համլիկի հրահանգի տակ, վազքով պտույտներ է կատարում սեղանի շուրջը: Մտնում է Ալմաստը:)
ԱԼՄԱՍՏ— (զարմանքից աչքերը լայն բացած) Վա՜յ, կուրանամ ես, տաքությունից խելքը կորցրել է... Պետիկ ջան, բալա ջան, ուշքի արի... Պետիկ... (փորձում է նրան բռնել):
ՀԱՄԼԻԿ— Կանգ առ: (Պետիկը կանգնում է):
ԱԼՄԱՍՏ— (որդու ձեռքից բռնելով) Պետիկ ջան, ինչի՞ ես անկողնուց վեր կացել... պառկի, պառկի, բալա ջան... ախր հիվանդ ես:
ՀԱՄԼԻԿ— Մի՛ անհանգստացեք, մայրիկ, նա հիվանդ չէ...
ԱԼՄԱՍՏ— Ո՞նց թե հիվանդ չէ...
ՀԱՄԼԻԿ— Նա պարզապես ինձանից էլ, ձեզանից էլ... առողջ է: Չե՞ք հավատում՝ իրեն հարցրեք:
ԱԼՄԱՍՏ— (Պետիկին) Հա՞...
ՊԵՏԻԿ— Հա:



ԱԼՄԱՍՏ— Բա տաքությո՞ւնդ:

ՊԵՏԻԿ— Անցավ:

ԱԼՄԱՍՏ— Ո՞նց թե անցավ: Հենց էս րոպեին, ինչ անում ես արա. տաքությունդ նորից բարձրացրու...

ՊԵՏԻԿ— Ո՞նց բարձրացնեմ:

ԱԼՄԱՍՏ— Ոնց ուզում ես բարձրացրու, իմ գործը չի... բարձրացրու ու նորից տեղաշորդ մտի, հասկացա՞ր:

ՀԱՍՄԻԿ— Չեմ հասկանում, մայրիկ, մի՞թե դուք ուզում եք, որ նա անպայման հիվանդ լինի:

ԱԼՄԱՍՏ— Բա ի՞նչ եմ անում, ուզում եմ:

ՀԱՍՄԻԿ— Ինչո՞ւ:

ԱԼՄԱՍՏ— «Ինչու՞ն» ո՞րն է, էն անագին մարդուն, բեղով մորուքով պրոֆեսորին դիվադադար արի, գրքերը մի կողմ դրեց, չարչարվեց, սկորի պոմոչին լեզու հասկացրեց, որ գա...: Հիմի էլ չորս հարկ իջել է, դռան մոտ սպասում է, որ բժշկին վերև բերի, տունը ցույց տա... Խեղճ պրոֆեսորի կնիկն էլ հեռախոսի գլխին նստած՝ րոպեն մեկ զանգ է տալիս ու սպասում, որ հեռախոսն ազատվի,՝ կարողանա սրա մոր դիրեկտորի հետ կապվի ու խնդրի, որ աշխատանքը կանգնեցնեն, տուն ուղարկեն:

ՀԱՍՄԻԿ— (Պետիկին խիստ նայելով) Խայտառակությո՛ւն:

ԱԼՄԱՍՏ— Խայտառակություն ասիր ու թողի՞ր... Սաղ քաղաքը ոտի կանգնեցրի, հիմի դուրս է գալիս, որ էս սևերեսին սկորի պոմոչ պետք չի:

ՀԱՍՄԻԿ— Պետք է, մայրիկ:

ԱԼՄԱՍՏ— Պետք է՞...

ՀԱՍՄԻԿ— Իհարկե... Նրան շտապ օգնություն հարկավոր է, բայց ոչ բժշկական: Նրան պետք է մեկ ընդմիշտ խելքի բերել և մենք այդ կանենք: (Պետիկը հանկարծ բարձրաձայն հեկեկալով գնում է դեպի դուռը՝ դուրս փախչելու համար):

ԱՇՈՏԻԿ— (Պետիկի առջևը դուրս գալով) Պետիկ ջան, ընկեր Լոռեցյանին ասացի, որ տաքության մեջ վառվում ես, ասաց՝ իզուր է շտապել հիվանդանալ, ստուգողականը երկու օրից է լինելու...

ՊԵՏԻԿ— (նրան մի կողմ հրելով) Դե կորի՛ դու էլ... (դուրս է փախչում):

ԱՇՈՏԻԿ— (Նրա հետևից նայելով) Դե արի ու էսպեսներին, որպես ընկեր, լավություն արա:

Վ ա ր ա գ ո ւ յ ր:





# ԱԶԵՐ ԿՂԶՈՒ ՇԱՎԱՐՇՅԱՆՆԵՐԸ

Շ. ԹԱԹԻԿՅԱՆ Նկ. Գր. ԽԱՆՋՅԱՆԻ

Առաջին գլուխ

## ԽՈՇՈՐԱԳՈՒՅՆ ՀԱՅՏՆԱԳՈՐԾՈՒԹՅԱՆ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆԸ

Առանձնատան առջև, պարտեզում մի կին կանաչեղեն էր քաղում։ Նայելով փողոցի վրա բացվող դռանը, նա ուղղվեց և դիմելով մոտեցող տղային, հարցրեց.

— Երվա՞նդ, առավոտ վաղ էս ո՞ւր էիր կորել։

— Գնացել էի Վարդանին տեսնելու։

— Էսպես վաղ ժամի՞։

— Ի՞նչ կա որ, տուն չմտա, լուսամուտից կանչեցի։

— Դեռ չես էլ լվացվել։ Շուտ լվացվիր, արի հաց կեր։

Երվանդը շտապ-շտապ նախաճաշեց և անմիջապես գնաց, բակի դռան մոտ դրված քարին նստեց ու աչքը ճանապարհին, սկսեց սպասել ընկերոջը։ Ախր մի ամիս էր իրար չէին տեսել. ինչքա՜ն բան ուներ ընկերոջը պատմելու... է՛լ Բաքվի՝ այդ հսկայական քաղաքի մասին, է՛լ ծովի, է՛լ...

Վերջապես Վարդանը երևաց։

— Գնանք ծառերի տակ,— առաջարկեց Երվանդը։

Հենց որ կանաչների վրա տեղավորվեցին, Վարդանն ասաց.

— Երեկ առավոտ հորեղբայրս իր մեքենայով Սևան տարավ, լողացանք, ման եկանք կղզում, մինչև տուն եկանք, ուշ գիշեր էր։ Դրա համար էլ առավոտյան ուշ վեր կացա։ Սևանում էնպես լա՜վ էր, ծո՜վը...

— Ծո՞վը,— ծիծաղեց Երվանդը։

— Ինչո՞ւ ես ծիծաղում։

— Բա ի՞նչ անեմ, Սևանում ի՞նչ ջուր կա, որ ծով էլ ասում ես։

Վարդանը քիչ մնաց վիրավորվեր ու հակաճառեր, բայց անմիջապես հիշեց, որ Երվանդն իսկական ծովափ էր գնացել։ Վարդանի հայրն-աշխարհագրության դասատու էր, և հենց Երվանդն իմացավ, որ իր ընկերը գնալու է Կասպից ծովի ափ, Բաքվին մոտիկ մի քաղաք, հորը մանրամասն հարցուփորձ արեց։ Կասպից ծովն էլ փաստորեն լիճ էր, քանի որ կապ չուներ ուրիշ ծովերի հետ, բայց նա շա՜տ, շա՜տ մեծ էր, այնքան մեծ, որ մարդիկ ծով էին անվանում։

— Դե, մենք էնտեղ, Սևանում ծով էինք ասում,—



արդարացավ Վարդանը։

— Ոչինչ, մի նեղացի, ես էնպես էʼլի, ծիծաղեցի...

Մի փոքր ժամանակ լռություն տիրեց, որը խախտեց Երվանդը։ Նա ձայնը ցածրացնելով, այնպես, որ Վարդանը հազիվ էր լսում, ասաց.

— Մի բան որ պատմեմ, ոչ ոքի չե՞ս ասի։

Վարդանի աչքերը հետաքրքրությունից փայլեցին։

— Չեմ ասի։

— Չե՞ս ասի, ոչ ոքի՞, թեկուզ... թեկուզ սպանե՞ն։

— Չէʼ, չեմ ասի, էʼլի, բա ինձ չես հավատո՞ւմ։

— Հավատում եմ,— շտապեց հանգստացնել Սամվելը,— բա որ չհավատամ, իսկի կասե՞մ...

— Դե ասա։

— Ասեմ։ Մենք համարյա ծովափին էինք ապրում։ Ես ամեն օր գնում էի ձկնորսների մոտ, նայում, թե ինչպես են ձուկ որսում...

— Չէի՞ր լողանում,— նրա խոսքը կտրեց Վարդանը։— Ես Սևանում իսկի ջրից դուրս չէի գալիս։

— Բա ես դուրս էի գալի՞ս որ... բայց սպասիր էʼ, բան եմ պատմում։



— Պատմիր, չեմ խանգարում։

— Ձկնորսները մեկ-մեկ ինձ էլ էին վերցնում իրենց հետ, օգնում էի...

— Ինչո՞վ էիր օգնում։

— Դե, ինչպե՞ս ասեմ, որ հասկանաս... օգնում էի ձուկը ջրից դուրս քաշել, տեղավորել, նավակի մեջ հավաքված ջուրն էի դուրս թափում... Մի խոսքով էʼլի...,

— Մի խոսքով,— արագ համաձայնեց Վարդանը, որ շտապում էր խորհրդավոր գաղտնիքն իմանալ։

— Ձկնորսների հետ լավ ծանոթացա, թողնում էին, որ մեկ-մեկ վերցնեմ փոքրիկ նավակն ու ափին մոտ թիավարեմ։

— Բա մենակ կարողանո՞ւմ էիր։

— Էնտեղ փոքրիկ նավակներ կային, մի հատ փոքրիկը կար, որ առաջին դասարանցին էլ կկարողանար թիավարել... մի խոսքով...

— Մի խոսքով...

— Մի խոսքով, մի անգամ էլ գնացի ծովափ, տեսնեմ ոչ ոք չկա։ Բոլոր ձկնորսները նստել են նավակներն ու գնացել ծովի խորքերը՝ ձուկ որսալու։ Ափին մի փոքրիկ նավակ էր մնացել... Ասացի նստեմ մի քիչ թիավարեմ։ Նստեցի թիավարեցի։ Շատ լավ էր, ոչ ոք չկար։ Հենց մենակ ես ինձ համար թիավարում էի։ Էնքան թիավարեցի, որ հոգնեցի, ուզեցի ափին մոտենալ, էդ ժամանակ մեկ էլ... մեկ էլ են տեսա՛ փոթորիկ բարձրացավ, որ... որ ոչինչ չէր երևում։ Երկինք, ծով խառնվեց իրար, ամեն ինչ մթնեց գիշերվա նման։

— Չվախեցա՞ր։

— Չէ մի, վախենալ,— արհամարհանքով ասաց Երվանդը, բայց անմիջապես խոսքը փոխեց։— Ինչպե՞ս չէ, վախենալը, ասենք վախեցա, բայց ինձ չկորցրեցի։ Մի խոսքով, չկորցրեցի, սկսեցի թիա-

վարել. մենակ թե, չգիտեի, որ կողմը թիավարեմ, հենց էնպես, թիավարում էի, էլի... Մի խոսքով, ի՞նչ երկարացնեմ, մեկ էլ հանկարծ փոթորիկը կտրվեց, նորից ամեն ինչ պարզվեց, տեսա, արդեն արևը մայր է մտնում։ Դես ու դեն նայեցի, տեսա ափը երևում է, թիավարեցի դեպի ափ...։

— Բա գաղտնիքն ի՞նչ եղավ... Հենց մի գլուխ փչում ես՝ փոթորիկ, թիավարել,— հիասթափված խոսեց Վարդանը։

— Ո՞վ է փչում, ե՞ս։ Դե որ փչում եմ, ուրեմն ոչինչ էլ չեմ պատմի...

— Դե լավ, պատմիր, բայց դե գաղտնիքը...

— Չէ, չեմ պատմի, մեկ է, չես հավատում։

— Հավատում եմ... դե կհավատամ, էլի, պատմիր... Թիավարեցիր դեպի ափ...

— Հա՜։ Մոտեցա ափին, ուզեցի նավակից դուրս գալ, մեկ էլ տեսնեմ, մեկ էլ ի՞նչ տեսնեմ, մի առյուծ իր ձագերի հետ ափի ավազի վրա պառկած, խաղ է անում։

— Չէ՛, չէ՛ մի... անսպասելիությունից Վարդանը մինչև անգամ նստեց։— Բաքուն քաղաք չի՞, էդքան մոտիկ ի՞նչ առյուծ...

— Սպասիր է՛, դեռ պատմեմ հետո... այստեղ Երվանդը մի խոտի ցողուն պոկեց, ծամծմեց, թքեց, ապա շարունակեց։— Դե, ի՞նչ խոսք, ես վախեցա, արագ-արագ հեռացա։ Ափի մոտով թիավարեցի, թիավարեցի, ասացի էնքան թիավարեմ, մինչև որ մի մարդու կամ մի նավակի հանդիպեմ... Գնում եմ, գնում, թիավարում եմ, մի ժամ, երկու ժամ, երեք ժամ, արդեն մթնելու վրա էր, երբ տեսա ափին ինչ-որ բաներ են շարժվում, ասացի մարդիկ կլինեն, մոտեցա, ձայն տվի՝ Ո՞վ կա էդտեղ։ Մեկ էլ մի մռնչոց լսեցի...

— Չէ՜ մի...

— Դե դու էլ ի՜նչ... մի գլուխ «չէ՜ մի» հա՛ «չէ՜ մի»... Չես հավատում՝ չեմ պատմի,— այս անգամ ինչպես երևում էր Երվանդն արդեն նեղացավ, որովհետև ինքն էլ պառկած տեղից վեր կացավ, նստեց և դեմքն ընկերոջից շուռ տալով, սկսեց անփութորեն խաղալ մի ցողունի հետ։

— Դե լավ, պատմիր...

— Հարկավոր չի... Դու մարդու ոչ մի խոսքի էլ չես հավատում։

— Դե դու պատմիր էլի, թե հավատալու լինի, կհավատամ։

— Էլ ի՞նչ պատմեմ, մեկ է, չես հավատա։ Բա դու կհավատա՞ս, որ ես երեք օր մեն-մենակ ապրել եմ անմարդաբնակ կղզու վրա...

— Ի՞նչ։

—Անմարդաբնակ կղզի։

— Անմարդաբնա՞կ,— զարմանքից, հետաքրքրությունից մի պահ Վարդանի աչքերը չռվեցին, բայց հետո նա անտարբերությամբ ձեռքը թափահարեց և ասաց.— Փչում ես...

— Փչո՞ւմ եմ, փչո՞ւմ եմ։ Դե սպասիր, հիմա կգամ։

Մի րոպեից Երվանդը վերադարձավ, ձեռքին մի ճմլված, թերթերի մեծ մասը պոկոտած տետր։

— Ըհը՛, նայիր, թե չես հավատում։

— Սա ի՞նչ է, որ...

— Իմ օրագիրն է, ի՞նչ է։ Կղզու վրա եմ գրել։

— Բա էնտեղ ո՞վ է քեզ տետր ու մատիտ տվել։

— Ուր գնում էի, հետս ման էի ածում, օրագիր էի պահում։

— Դե լավ, տուր տեսնեմ...— Վարդանը ձեռքն առավ տետրը և սկսեց կարդալ. «Օգոստոսի 15-ին։ Ուռա՜։ Ես անմարդաբնակ կղզի եմ գտել։ Ես մի նոր Ռոբինզոն եմ։ Գիշերը ծառից կապվեցի, քնեցի։ Առավոտյան մեծ զգուշությամբ, որպեսզի գազանների ճանկը չընկնեմ, ման եկա իմ կղզում։ Կղզու անունը դրի «Ազեր»։

«Օգոստոսի 16-ին։ Այսօր իմ կղզում հանդիպեցի մի քանի հազվագյուտ կենդանիների, թռչունների և բույսերի։ Ափսոս, հրացան չունեի, թե չէ լավ որս կանեի։ Ավազի մեջ գտա կրիայի ձվեր։ Կրակ չունեի, ուստի հում-հում կերա։ Հարկավոր



է պարզել, թե իմ կղզին ո՞ր կողմում է գտնվում, արևելքո՞ւմ, թե՞ արևմուտքում։ Այսօր ամպամած է, վաղը կպարզեմ»։

«Օգոստոսի 17-ին։ Այսօր կերա թռչունի ձվեր, հետո գտա ուտելու բույսեր։ Ազեր կղզին գտնվում է արևելքում 168°, 111 և 178, 329»։

«Օգոստոսի 18-ին...»

— Դե լավ, մնացածը հետաքրքիր չի,— ասաց Երվանդն ընկերոջ ձեռքից տետրը խլելով:

— Բա ասում էիր երեք օ՞ր ես մնացել:

— Կղզո՞ւմ, երեք օր եմ մնացել: Մնացածը ուրիշ բաների մասին է: Հիմա հավատո՞ւմ ես...

Վարդանը բոլորովին շփոթվել էր: Նա արդեն իր ընկերոջն էր նայում բոլորովին ուրիշ հայացքով: Երվանդն անհավատալի բաներ էր պատմում, բայց... էդ օրագիրը, մանրամասնությունները...

— Իսկ ինչո՞ւ կղզու անունը դրիր Ազեր,— հարցրեց Վարդանը:

— Դե, իմ ազգանունով էլի, Ազնավուրյան Երվանդ... Կրճատ՝ Ազեր:

— Հը՜մ,— Վարդանը նույնիսկ նախանձի նման մի բան զգաց: Երվանդը, եթե մինչև անգամ փչում է, ապա նախանձելի է փչում: Ընդհանրապես Երվանդը սիրում է ամեն ինչ մի փոքր չափազանցացնել: Մեկ էլ տեսար, իր կարդացած գրքերից մի բան պատմեց, էնպես պատմեց, որ կարծես իր հետ լինի պատահած: Բայց Երվանդն իր այս անգամվա պատմածի մեջ, ինչքան էլ որ չափն անց-





կացրած լինի, ինչքան էլ որ ճշմարտությունը փոքր լինի, էլի քիչ բան չի: Մարդն անմարդաբնակ կղզի է գտել: Կատակ հո չի՞: Ու դեռ կղզին էլ իր անունով է կոչել:

— Կղզու վրա լեռներ կան, գետեր, դրանցից ո՛ր մեկը ուզես, քո անունով կկոչենք,— ասես ընկերոջ մտքերը կռահելով, շտապեց նրան մխիթարել Երվանդը:

Վարդանն աշխատելով ուրախությունը թաքցնել, բոլորովին լուրջ ու գործնական տոնով, հարցրեց.

— Բա հիմա ի՞նչ պիտի անես:

— Ի՞նչը ինչ պիտի անեմ:

— Կղզին, ինչը:

— Պիտի նվիրեմ կառավարությանը:

— Բա էն է, միանգամից կնվիրեիր էլի՛... ինչի՞ ես մինչև հիմա գաղտնի պահել:

— Գիտե՞ս ինչ: Մտածեցի մի լավ ծանոթանալ կղզու հետ, իմանալ ի՞նչ հարստություններ ունի, ինչքա՞ն է տարածությունը, բնակչ... չէ, բնակչություն չունի: Ասենք, ո՞վ է իմանում, գուցե վայրենիներ լինեն:

— Չէ՛, չէ՛ մի... փորձեց նորից իր թերահավատությունը հայտնել Վարդանը, բայց Երվանդը, զգալով, որ իր պատմածներն արդեն խոր տպավորություն են թողել ընկերոջ վրա, նրան նայեց այնպիսի խղճահարությամբ և արհամարհանքով, որ Վարդանը շտապեց իր սխալն ուղղել:

— Ասենք ի՞նչ կա որ... վայրենիներ էլ կարող են լինել: Բայց դու ասա է, ինչո՞ւ կղզին չես նվիրել:

— Դե, էն է, ասացի է՛լի, լավ՝ ուսումնասիրեմ, հետո, կարող է էնքան էլ արժեքավոր կղզի չլինի, ինչո՞ւ զուր տեղը գլուխ գովեմ, հարայ-հրոց բարձրացնեմ և մեր պետության նեղություն տամ...

— Հա, բա ի՞նչ:— Ամենայն լրջությամբ համաձայնեց Վարդանը:

— Բայց չէ, ես կարծում եմ էնտեղ ոսկու հանքեր կան:
— Չէ՛, չէ՛ մի...
— Էլի՞ «չէ, չէ մի»...
— Չէ, ուզեցի ասել, որ դա շատ լավ բան է, բայց դու ի՞նչ իմացար:
Պատասխանելու փոխարեն Երվանդը գնաց տուն և հետը մի պահածոյի տուփ բերեց, մեջը գույնգույն քարեր: Դրանց միջից մի տափակ քար ջոկեց, որի հարթ մակերեսի վրա պսպղուն բեկորներ էին կպած:
— Սրանք ոսկի և արծաթ են,— բացատրեց նա:
Կղզու մասին ընկերների զրույցն այստեղ ընդհատվեց, որովհետև Վարդանի քույրը եկավ նրան տուն կանչելու: Վերջին պահերին Երվանդն ընկերոջ ականջին շշնջաց.
— Տե՛ս, մարդու բան չասես, հա՜...
— Չեմ ասի... բայց դու ինչպե՞ս վերադարձար,



ինչպե՞ս գտար ճանապարհը:
— Քիչ էր մնում չգտնեի,— նրա ականջին շշնջաց Երվանդը,— մի ամբողջ օր թխավարեցի, մինչև գտա, մի խոսքով, կպատմեմ...
Վարդանն արդեն շրջվեց, մի քանի քայլ արեց դեպի բակի դուռը, բայց վազելով վերադարձավ և ընկերոջ ականջին հարցրեց.
— Բա որ երեք օր տանը չէիր, մամադ բան չասե՞ց...
Երվանդը չհասցրեց պատասխանել, որովհետև Վարդանի քույրն այնպիսի աղմուկ բարձրացրեց, որ տղան վախեցած վազեց դեպի դուռը:
— Էս մի ժամ է կանչում եմ, հայրիկը քեզ է սպասում, իսկ դու...— լսվեց նրա բարկացած ձայնը:
Վարդանն այդ օրն այլևս չերևաց: Երվանդը մի քանի անգամ գնաց նրանց տուն, բայց նա հոր և քրոջ հետ միասին տեղ էր գնացել:
Վարդանը ուշ գիշերին քնելուց առաջ հարցրեց.
— Հայրիկ, անմարդաբնակ կղզիներ լինու՞մ են:
— Լինում են ինչո՞ւ չէ,— պատասխանեց Վարդանի հայրը, որ աշխարհագրության դասատու էր:
— Իսկ եթե մարդ մի այդպիսի կղզի գտնի՞:
— Ո՞վ գտնի, ինչպե՞ս...
— Դե մի մարդ էլի, ասենք օրինակ՝ ես:
— Դո՞ւ,— կատակի տալով, հայրը ուրախ ծիծաղեց,— օ՜, դա մեծ, շատ մեծ նվաճում կլինի, դա խոշորագույն հայտնագործություն կլինի: Այն ժամանակ գուցե նույնիսկ կղզին կոչեն քո անունով:
Վարդանի հորը շատ էր դուր գալիս, երբ տղան հարցեր էր տալիս աշխարհագրությունից:
— Իսկ կարո՞ղ է այդպիսի բան պատահել:
— Ինչպե՞ս ասեմ, մեր օրերում ծովային և օդային տրանսպորտը շատ է զարգացել և երկրագնդի վրա դժվար է գտնել տեղեր, որ հետազոտված չլինեն. ծայր հյուսիսում և հարավում այդպիսի բաներ դեռ կպատահեն, իսկ մյուս, տաք ծովերում և օվկիանոսներում հազիվ թե...
— Կասպից ծովը տա՞ք ծով է:
— Տաք է...
Վարդանը մտքի մեջ ընկավ: Հոր ասածները նրա մեջ որոշ կասկածներ ծագեցին, բայց և միաժամանակ ամրապնդեցին հավատը: Հայրը բոլորովին չժխտեց կղզին գտնելու հնարավորությունը:
Այդ մտքերի մեջ Վարդանն աչքերը փակեց: Նրան զարմանալի երազներ էին սպասում: Փոթորիկներ, նավեր, ինչ-որ կրակոցներ: Ինչ-որ ավազների վրա շան լակոտներ էին խաղում, այնքա՜ն սիրունիկներն էին: Վարդանը մոտ վազեց նրանց շոյելու, բայց այդ ժամանակ պարզվեց, որ դրանք առյուծի ձագեր են, որոնց մայրը մի քարի հետևում թաք կացած սպասում էր: Առյուծն անմիջապես հարձակվեց, Վարդանը սարսափահար ճչալով փախավ և... ոչ մի դժբախտություն էլ չպատահեց: Արթնացավ: Արդեն լուսացել էր: «Շուտ թեյ խմեմ, գնամ Երվանդի մոտ»,— անմիջապես մտածեց նա:

(Շարունակելի)







## ՉՈՒԳՈՒՆԻ ՇԻԹԵՐԸ

Դուք տեսե՞լ եք, թե ինչպես է հալած չուգունը դատարկվում կաղապարների մեջ: Դա շատ հետաքրքիր տեսարան է: Շիկացած զանգվածը հոսում է առվակի նման և թվում է, թե ոչ ոք չի կարող նրան մոտենալ: Չէ՞ որ դա հալված, եռացող մետաղ է: Բայց այնտեղ, ուր հալում են չուգունը, ուժեղ ու համարձակ մարդիկ են աշխատում:

... Երևանի Ձերժինսկու անվան հաստոցաշինական գործարանի ձուլման ցեխում է աշխատում Սերյոժա Մանուչարյանը: Մի քանի տարի առաջ նա հասունության ատեստատ ստացավ և եկավ գործարան

Շուտով նա դարձավ փորձված ձուլող վարպետ: Սերյոժան շատ է սիրում իր մասնագիտությունը: Եվ ինչպե՞ս չսիրի. չէ՞ որ գործարանի արտադրած յուրաքանչյուր հաստոցում տասնյակ դետալներ կան, որ ինքն է հալված չուգունից ձուլել:

... Ահա ցեխի առաստաղի տակով հանդարտ առաջ է սահում կամրջային ամբարձիչը, որին ղեկավարում է Սիրուշ Մելքոնյանը: Նա էլ է գործարան եկել հասունության ատեստատով և Սերյոժայի պես շատ է սիրում իր գործը, որովհետև նրանից շատ բան է կախված ցեխում: Ահա Սերյոժան նշան է անում, և անմիջապես հալված չուգունով լի ծանր կաթսան կախվում է օդում: Ամբարձիչը շարժվում է այնտեղ, ուր շարված են հողից պատրաստված մետաղե դետալների կաղապարները:

Հարկավոր է շտապել. մետաղը կարող է սառել, և այդ դեպքում խոտան կստացվի: Արագորեն աշխատում են Սերյոժայի հմուտ ձեռքերը: Նա հրե շիթը վարպետորեն ուղղում է դեպի հողե կաղապարների վրա թողած անցքերը: Սերյոժան լավ գիտի, թե ինչպես պիտի վարվել շիկացած զանգվածի հետ: Նրա կամքին հնազանդ՝ բարակ, շլացուցիչ շիթերը հավասար կերպով լցվում են կաղապարների մեջ... Մի քանի ժամ հետո սառած դետալները հողից կհանվեն և կգնան մեխանիկական ցեխ՝ վերամշակվելու:

Եվ Սերյոժան գիտի, որ խառատները իրեն կգովեն: Նրա ձուլած դետալները չեն խոտանվի:

Երեխաներ, երբ դուք էլ դպրոցն ավարտելուց հետո գնաք գործարան աշխատելու, Սերյոժան ձեզ կհաղորդի իր փորձը և գուցե գա ժամանակ, որ դուք նրա հետ մրցեք: Բայց դուք երևի չգիտեք էլ, որ նա դետալները ձուլում է ձեր հավաքած մետաղ-լոմից: Նա ինքն էլ մի ժամանակ ձեզ նման պիոներ էր և մետաղ-լոմ էր հավաքում:



Նկ. Գ. ՀԱԿՈԲՅԱՆԻ



## «ՈՒԿՐԱԻՆԱ»

Սովետական ավիակոնստրուկտորները ստեղծել են մարդատար նոր տուրբոպտուտակային «Ուկրաինա» ինքնաթիռը։

Մինչև այժմ մեր երկրի տրանսպորտային-ավիացիոն գծերում աշխատում էին մխոցային շարժիչներով ինքնաթիռներ։ Վերջերս հայտնվեցին արագընթաց տուրբոռեակտիվ նոր „ТУ—104" մեքենաները։ Սակայն „ТУ—104" տուրբոռեակտիվ ինքնաթիռները նախատեսնված են գլխավորապես հեռավոր գծերը սպասարկելու համար։ Վերջին ժամանակներս մարդատար ինքնաթիռների շինարարության մեջ մեծ կիրառում են գտնում տուրբոպտուտակային շարժիչները։ Տուրբոպտուտակային ինքնաթիռները լայն տարածում կստանան տրանսպորտային ընդարձակ գծերում, որտեղ ներկայումս օգտագործվում են մխոցային մեքենաներ։ Հազար կիլոմետր տարածության վրա տուրբոպտուտակային ինքնաթիռով ուղևորի փոխադրման ինքնարժեքը 30—50 տոկոսով ավելի էժան է, քան մխոցային շարժիչ ունեցող ինքնաթիռով։ Ուղևորությունն այդպիսի ինքնաթիռով կարժենա մոտավորապես այնքան, որքան արժե պլացկարտային տոմսը երկաթուղում։

Տուրբոպտուտակային «Ուկրաինա» ինքնաթիռը նախատեսնված է 84 ուղևորի և միաժամանակ 3,5 տոննա բեռի փոխադրման համար։ Նրա արագությունը մեկ ժամում հասնում է 600 կիլոմետրի։ Ինքնաթիռը ունի 4 հզոր տուրբոպտուտակային շարժիչներ, որոնք տեղավորված են թևերի վրա։ Ինքնաթիռը կարող է վեր բարձրանալ, թռչել և վայրէջք կատարել ուղղակի հողածածկ օդանավակայանում՝ օդերևութաբանական ցանկացած պայմաններում։ Ինքնաթիռը հնազանդ է օդաչուին, նա ունի պարզ և հեշտ ղեկավարում։ Ինքնաթիռի ներսում կան ծալովի նստարաններով երեք ընդարձակ սալոններ, հատուկ բաժիններ՝ ուղեբեռների համար, կախիչներ՝ վերնազգեստի համար։ Ուղևորները թռիչքի ժամանակ կարող են տաք կերակուր ստանալ։

*Մեր ամսագրի այս համարում տպագրված գունավոր ներդիրի նկարները վերցված են Երիտասարդության ռեսպուբլիկական տոաջին ֆեստիվալին նվիրված գեղարվեստական ցուցահանդեսից։ Ներդիրը տպագրված է Հայպոլիգրաֆհրատի № 1 տպարանում։*


**Խմբագրական կոլեգիա**

ԱՍԱՏՐՅԱՆ Օ., ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԵՍԱՅԱՆ Վ., ՀՐԱՉՅԱՆ Խ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Ս. (խմբագիր), ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ Պ. (պատասխանատու քարտուղար), ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍԱՖՅԱՆ Պ., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս. (գեղարվեստական խմբագիր), ՕՀԱՆՅԱՆ Ա.։

„Пионер" на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Кармир Банаки № 41.

*Հասցեն՝ Երևան, Կարմիր Բանակի փողոց № 41, հեռախոսներ՝ 2—44—83, 2—59—06*

*ՎՖ 07847, Պատվեր 692, Տիրաժ 5000։ Տպագրական 4,5 մամուլ։ Ստորագրված է տպագրության 2/VII 1957 թ. ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Պոլիգրաֆկոմբինատ, Երևան, Տերյան 91։ Գինը 2 ռ.*





## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ


1. Ֆեստիվալային օրեր— Պ. ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ . . . 1
2. Իմ փոքրիկ պիոներուհիս— Ա. ԴԱՐՅԱՆ . . . . . 6
3. Անվանի խանձիստը— Զ. ՎԱՐԴԱՊԵՏՅԱՆ . . 10
4. Դասուն—Ռ. ՌՋԱ . . . . 11
5. Էլի ծիածանը դու ես— Ա. ՔԱԼԱՆԹԱՐՅԱՆ . . 14
6. Տեղը գնես՝ կգտնես, Քիթը բաց—Լ. ԴԵԼՅԱՆՈՒ 16
7. Այծյամ—Կ. ՁԱՁԱՆԻ . . . 17
8. Ամառը սարերում— Ռ. ՀԱՄԶԱՏՈՎ . . . . 17
9. Հարկավոր է ըստապ օգնություն—Դ. ՅԱՂՋՅԱՆ . 18
10. Ազեր կգզու նավաբեկյալներ—Շ. ԹԱԹԻԿՅԱՆ . 26
11. Զուգունի ծիբերը . . . . 31
12. Ուկրաինա . . . . . . . . 32
13. Ժամանց




## ՍԱՐՍԱՓԵԼԻ ԵՐԱԶ



Մի ֆուտբոլասեր, վշտացած «իր» թիմի պարտությամբ, անհանգիստ պառկեց քնելու: Երազում նա մի քառակուսի և դատարկ սենյակ տեսավ: Սենյակում դարբասապահը փորձ էր կատարում: Նա ֆուտբոլի գնդակը խփում էր պատին ու ճարպկորեն որսում: Հանկարծ դարբասապահը սկսեց փոքրանալ: Փոքրացավ և վերջապես դարձավ սեղանի թենիսի ցելյուլոիդե մի փոքրիկ գնդակ, իսկ ֆուտբոլի գնդակը վերածվեց նույն մեծության չուգունե գնդի: Գունդը կատաղորեն պտտվում էր սենյակի հարթ հատակի վրա, ձգտելով ճզմել փոքրիկ գնդակը: Խեղճը հուսահատ մի կողմից մյուսն էր գլորվում, բայց ոչ մի կերպ չէր կարողանում վեր թռչել գետնից:

Կարո՞ղ էր փոքրիկ գնդակը, առանց հատակից կտրվելու թաքնվել մի ինչ-որ տեղ և խուսափել չուգունե գնդի հետապնդումներից:

## ԻՆՉՊԵ՞Ս



Կիսակայարանում կանգ առավ շոգեքարշից և հինգ վագոնից բաղկացած մի գնացք, որը բանվորներ էր տեղափոխում նոր շինարարության վայրը: Նույն ուղղությամբ այդտեղ ժամանեց մի ուրիշ՝ մարդատար գնացք:

Ինչպե՞ս ճանապարհ տալ մարդատար գնացքին, եթե այդ կիսակայարանում կա՛ մի փոքրիկ փակուղի, որտեղ հնարավոր է տեղավորել միայն շոգեքարշը և երկու վագոն:

## ՁԻՈՒ ՔԱՅԼԵՐՈՎ

Շախմատային այս զվարճալի խնդրի լուծման համար չի պահանջվում, որ մարդ շախմատ խաղալ իմանա: Բավական է միայն գիտենալ, թե տախտակի վրա ձին ի՞նչ կերպ է կատարում իր քայլերը: Շախմատի տախտակի վրա կանգնած են սև զինվորներ (նկ. № 1): Սպիտակ ձին դրեք ձեր ցանկացած տեղը այն հաշվով, որ հնարավորին չափ քիչ քայլ կատարելուց հետո, կարելի լինի ոչնչացնել բոլոր սև զինվորներին:




### ՊԱՏԱՍԽԱՆՈՒՄ ԵՆՔ

«Պիոներ» № 5

Կրոսվորդ: Հորիզոնական — 3. Տոլուչ, 6. Ներուդա, 7. Ջեգերս, 10. Պրագա, 11. «Բոչարի», 13. Նիզամի, 15. Մոսկվա, 19. Գալաց, 20. Լացիս:

Ուղղահայաց—1. Զոլա, 2. Սուեզ, 4. Արարատ, 5. «Թեհրան», 8. Պանամա, 9. Կոչետ, 10. «Պիոներ», 12. Իգնատև, 14. Զարյան, 16. Կարմիր, 17. Կուց, 18. Տալ:

Ում ազգանունն է— 1. Տենոր, 2. Վերդի, 3. Դավիթ, 4. «Դոյնա», 5. ռումբա, 6. քանոն, 7. օպերա—Բորոդին:

Թեքուս—Կռունկ, կոցար, բադե, կկու, թութակ, սոխակ, արագիլ, սարյակ:

Ուղղեցեք սխալը—

առաջին լուծում

VI+IV=X

երկրորդ լուծում

V+IV=IX

Անքան մարդն ու տատանան—21 կոպեկ:





ԳԱՍՊԱՐՅԱՆ ԿԱՐԵՆ (6 տարեկան)



ՍՏԵՓԱՆՅԱՆ ԳԱՅԱՆԵ (6 տարեկան)



ՔՈՉԱՐ ՀԱՅԿԱԶ
(9 տարեկան)



ՔՈՉԱՐ ՀԱՅԿԱԶ (9 տարեկան)

*Տեսնո՞ւմ եք, երեխաներ, այս նկարները կատարել են ձեզ նման փոքրիկները։ Գայանեն ու Կարենը ընդամենը վեց տարեկան են, իսկ Հայկազը 3-րդ դասարանում է սովորում։ Դուք էլ երևի նկարում եք։ Երբ համեմատաբար հաջող նկարներ կստացվեն՝ ուղարկեք մեզ, մեր ամսագրում այսուհետև հաճախակի կտպագրվեն երեխաների ստեղծագործությունները։*